Շնորհավոր
ՄԱՐՏԻ 8-Ը,
սիրելի մայրիկներ,
տատիկներ ու
քույրիկներ



ՆԿ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

№ 3 ● 1985

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկը՝ ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

# Վերջին մայրերը

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Գյուղի դիմաց, փոքրիկ բլրի վրա, միայնակ խաչքար էր կանգնած՝ մոմի բոցերից սևացած, մաշված՝ արևից, անձրևից ու հավատացյալ կանանց ջերմեռանդ համբույրներից:

Այդ բլրի գագաթին էլ բարձրացավ Հայրենական պատերազմում զոհվածների հուշարձան-աղբյուրը: Եվ դարավոր միայնակ խաչքարը ծվարեց նրա ստվերում, սրբության իր իրավունքը հավերժապես կտակելով նրան:

Հուշարձանի բացումը տեղի ունեցավ մայիսի 9-ին, Հաղթանակի օրը: Բլրի ստորոտում փռված արտերը արդեն փարթամ կանաչ էին դարձել, եգիպտացորենի դաշտը մինչև բլուրն էր հասնում և գետնատարած ցողունները գլխիկներն էին օրորում՝ տխուր ու խորհրդավոր փսփսոցով: Մի քիչ հեռու այգիներն էին՝ երիզված ծիրանենու դաշտերով: Արձանի շուրջը ծաղկառատ սեզերն ու խոտերը մայիսյան օրվա հանդերձանքով դիմավորում էին եկողներին: Քարե զինվորը դեռ շրջարշված էր սպիտակ պաստառով: Պատվանդանի տակը ընդարձակ սենյակ էր, որ հանպատրաստից դարձրել էին թանգարան, տեղադրել զոհված մարտիկների նկարներ, նամակներ և հուշե՜ր, հուշե՜ր...

Դեպի բլուրն էր ձգվում մարդկանց շղթան: Նույնիսկ օրորոցի երեխաներին էին գրկած տանում: Երևի գյուղի կյանքում ամենանշանավոր օրն էր, երբ ոչ մեկը չպետք է բացակայեր: Եկել էին հեռուն-



րում գտնվող համագյուղացիները՝ ծաղկեպսակներով, սև ժապավենների վրա մակագրություն՝ Ղազարյանների ընտանիքից զոհվածներին, մեր սիրելի հայրիկին ու մեր զոհված համագյուղացիներին՝ Ազատյաններ... Եվ այսպես՝ բոլորը։

Ավտոմատավոր զինվորները տողան կազմեցին արձանի շուրջը, նրանց կողքին էին պիոներները։ Զինվորական նվագախումբը բացեց հանդեսը։ Հետո անցան արարողության ամենահանդիսավոր պահին։ Երեք որդեկորույս մայր (նրանց մեջ էր Հռիփսիմեն) դողացող մատներով սև ժապավենը կտրեցին։ Սպիտակ պաստառն ընկավ զինվորի ուսերից։ Ավտոմատներն համազարկ տվեցին, նվագախումբը մարտական քայլերգ նվագեց։

Զինվորը կանգնել էր բլրի գագաթին։ Խրոխտ կեցվածք ուներ, սեռուն հայացք և այնպես խորհրդավոր էր նայում գյուղին, կարծես չէր ճանաչում։ Կանգնել էր հեռվում՝ մի քիչ շփոթված, մի քիչ զարմացած ու չէր համարձակվում գյուղ մտնել։ Իսկ նրան՝ զինվորին, որ քարե թիկնոց ուներ ու քարե ավտոմատ, որ ջահել էր ու կորովի, հավաքվածները միանգամից ճանաչեցին։ Եվ միանգամից հորդեց կարոտը, սրտի ու հոգու հեռավոր ծալքերում տարիներով ամբարված կարոտը։ Այնքան հարցեր կային տալու։ Զինվորը անես լսում էր ուշադիր և անես պատասխանում.

— Ինչո՞ւ ուշացար, զավա՜կս։

— Վերադարձի ճամփան շատ երկարեց:
— Հիշու՞մ ես ինձ, ճանաչեցի՞ր:
— Դու իմ սիրած աղջիկն ես:
— Ես հիմա տատիկ եմ: Մազերս ճերմակել են, ինչպե՞ս ճանաչեցիր...
— Հայրի՛կ, ես հիսուն տարեկան եմ, դու՝ քսաներկու...

Զինվորը շոյեց իր տասնամյա դստեր մազերը, որ հիմա հիսուն տարեկան էր ու լալիս էր ջահել հոր համար:

Պիոներական փողկապով տղան երկար նայեց քարե զինվորին ու լացակումած քաշեց տատի փեշից.
— Սա իմ պապիկը չի:
— Սա բոլորի՛ պապիկն է, տղա՛ս: Լա՛վ նայիր, կճանաչես:

Տղան նորից նայեց, և զինվորը ժպտաց նրան:
— Մի օր էլ դու զինվոր կդառնաս, զավա՛կս, խաղաղ օրերի զինվոր:

Տախտակե բեմը զարդարված էր մայիսյան դաշտերի թարմ ծաղիկներով, ուռենու տխրատես ճյուղերով ու պարտեզի կոկոն վարդերով: Ելույթ ունեցողները ծաղիկների միջով բարձրանում ու իջնում էին: Հերթը հասավ Հռիփսիմեին: Սև ծոպավոր գլխաշորը ուղղեց, նայեց կողքին կանգնած սևազգեստ կանանց, որոնք հայացքներն ակնապիշ հառել էին քարե արձանին ու շարունակում էին չափել իրենց տառապանքը այն օրից, ինչ զինվորի մայր էին դարձել, մինչև այս պահը, որ դեռ զինվորի մայր էին: Հռիփսիմեն մըտքերից նրանց կտրեց ու միայն նրանց լսելի շշնջաց.
— Դուք էլ եկեք:

Բեմը միանգամից լցվեց մայրերով՝ փոքրացած, մի բուռ դառած մայրերով: Իր ձեռքով որդուն գերեզման դնողն անգամ չի հավատում զավակի մահվան, ի՞նչ մնաց սրանք, որ իրենց ձեռքով են ուսապարկ պատրաստել, իրենց ոտքով են տարել ճանապարհել, հետո նամակներ են ստացել տարբեր ռազմաճակատներից, բայց համարյա նույն բովանդակությամբ՝ մենք կհաղթենք, մենք կվերադառնանք... Պայծառ տրամադրությամբ գրված նամակներ, որոնք մինչև հիմա կենդանի սրտի պես տրոփում են մայրերի ոսկրացած ու կնճռապատ ձեռքերում:

Մայրերը բեմ բարձրացան: Հովերը մայիսյան դաշտերի բուրմունքն էին բերում, որ բուրմունք չէր, այլ կարոտ՝ հավերժական ու անամոք: Եվ կարոտի արցունքներ էին թափվում հավաքվածների սրտի մեջ, երբ նայում էին կարոտից սըմքած, կարոտից խեղճացած և ամբողջ կյանքում որդիների վերադարձի ճամփան պահող այս կանանց: Հռիփսիմեն նայում էր դաշտերի ալիքվող կանաչներին, հորիզոնը երիզող կապույտ երկնքին: Հեռու, շատ հեռու մի թռչուն էր անհոգ թևին տալիս: Նրան թվաց, թե թռչունն իր մտքերն է տանում անհայտ ուղղությամբ իր անհայտ զինվորներին: Եվ չսպասեց, որ թռչող կետը լրիվ անհետանա, ընթափվեց և կարծես նոր նկատեց մարդկանց, որ իր խոսքին էին սպասում, և ասաց իր խոսքը.
— Թող մենք լինենք զոհված որդիներին սպասող վերջին մայրերը...

Հուշարձանը դարձել է ուխտատեղի: Ամեն կիրակի, երեկոյան կողմ, փոքրիկ բլուրն ի վեր բարձրանում է սևազգեստ կանանց շարանը՝ դանդաղ ու հանդիսավոր, ծեսի գնացողի անշտապ քայլերով: Գնում են երեկոյան, արևամուտից առաջ, ու երբ հասնում են քարե զինվորին, հեռվից նայելիս թվում է հորիզոնին են հասել: Մի պահ հավերժանում են արձանն ու մայրերը՝ Մեծ պատերազմում հայրենիքի համար զոհված մարտիկների վերջին մայրերը... Ճանապարհը թաց լինի թե փոշոտ, կիրակին անձրևոտ լինի թե ձյունոտ, միևնույն է, նրանք շարան-շարան գնում են ուխտի: Ճանապարհն ասես հառաչում է նրանց վշտի ծանրությունից, մոտակա եզերքին աճած դաղձերը լուռ խոնարհվելով սվսվում են ու ավելի թանձրացնում բույրերը՝ հիշեցնելով, որ ջահելությունը բնության պարգևված ամենամեծ գեղեցկությունն է, ամենաբուրավետ գեղեցկությունը:

Հուշարձանի բացումից տարիներ են անցել: Նոսրացել է վերջին մայրերի շարքը: Մի քանի օր առաջ էլ Հռիփսիմեն մահացավ, դարձյալ ձեռքը երկարացրած՝ որդուն էր ուզում:

Ասում են, որ աշխարհի բոլոր երկրներում զինվորական օրենքները թույլատըրում են զինվոր որդիներին գնալ ու հասնել մոր վերջին ժամին, համբուրել նրա մոմագույն կնճիռները և իրենց դարձին սպասող աչքերն իրենց ձեռքով փակել: Իսկ ու՞ր եք դուք, զինվո՛ր որդիներ, մեռնում են ձեր դարձին սպասող վերջին մայրերը...

# Հայոց լեզու

Անու՜շ իմ լեզու,
Քա՛ղցր իմ լեզու,
Ես սիրում եմ քեզ
Մորս կաթի պես:
Ջա՜ն, իմ հա՛յ լեզու,
Իմ ոսկի՛ լեզու,
Դու մեսրոպատառ,
Դու ադամանդյա
Հայկյան իմ բարբառ:
Ես սիրում եմ քեզ
Մորս կաթի պես,
Իմ անու՜շ լեզու,
Իմ հարու՜ստ լեզու,
Իմ անգին լեզու:
Իմ հացը դու՛ ես,
Իմ ջուրը դու ես,
Իմ սուրը դու ես,
Իմ երգը դու ես,
Իմն ես դու, իմն ես,
Ես սիրում եմ քեզ
Ոչ թե երեսանց,
Այլ հոգուս խորքից,
Ես սիրում եմ քեզ
Մորս կաթի պես...

ՆԱԻՐԱ ՍԻՄՈՆՅԱՆ
Վրաց. ՍՍՀ, Բոգդանովկայի
շրջան. գ. Հեշտիա,
7-րդ դաս.





«ԲՆԱՆԿԱՐ»
«ՀԱՅԱՍՏԱՆ»

ԱՐՄԵՆ ՏՈՆՈՅԱՆ
Երևանի № 188 միջն. դ., 8-րդ դաս.

# Հեռուստացույցի էկրանի առջև

# Հակոյի ջրաղացը

Մինչև այսօր էլ, գյուղից հեռու, ամայի դաշտում, պահպանվում են հին ջրաղացի ավերակները: Վաղուց է լռել ջրաղացի աղմուկը: Շատ խորհրդավոր պատմություններ են պտտվում ջրաղացի շուրջը, որոնք մնացել են տարեց մարդկանց հիշողության մեջ:

Պատմում են, թե ինչպես Հակո անունով մի մարդ երեկոյան ցորեն է տանում աղալու: Ջրաղացպանը այնտեղ չի լինում: Հակոն երկար սպասում է նրան և չի նկատում, թե ինչպես օրը աստիճանաբար մթնում է: Իսկ ջրաղացպանը չկար ու չկար:

Հակոյի սիրտը ահ է ընկնում: Նա հիշում է չարքերի մասին գյուղում պատմվող պատմությունները, որոնք իբր թե գիշերում են ջրաղացում:

Մինչև գյուղ բավականին ճանապարհ կար, և Հակոն հաղթահարելով վախը, որոշում է սպասել ջրաղացպանի գալուն:

Անցնում են տանջալից րոպեներ, որոնք ժամեր են թվում նրան:

Քամին գնալով ուժեղանում է, ու հանկարծ փայտյա խարխուլ հին դուռը քամու ուժից տապալվում է գետին:

Հակոն սարսափահար գոռում է և իրեն կորցրած՝ նետվում դուրս...

Հաջորդ օրը գյուղում լուր է տարածվում, թե՝ բա չեք ասի, Հակոն խելագարվել է:

Այդ դեպքից շատ տարիներ են անցել: Ջրաղացից միայն ավերակներ են մնացել և այս տխուր պատմությունը:

**ՎԱՐՈՒԺԱՆ ՍԱՐԳՍՅԱՆ**
Ապարանի շրջան, գ. Մուլքի,
9-րդ դաս.

Մորս պատմածով՝ ես լաց չեմ եղել
Մանկան իմ փոքրիկ օրորոցի մեջ,
Քնել եմ խաղաղ, արթնացել հանգիստ
Ու մորս հաճախ մեծ եմ թվացել:

Հիմա մեծացել ու լաց եմ լինում
Հեռուստացույցի էկրանի առջև,
Թե ինչպես մարդիկ խոցվում են, մեռնում
Թշնամու զենքով իրենց տան դիմաց:

Դո՛ւ՝ լիբանանցի վիրավոր փոքրիկ,
Ես քեզ տեսել եմ վիրահատվելիս,
Դարման չեմ արել ցավացող վերքիդ,
Բայց սիրտս ցավեց քո վերքի ցավից:

Հիմա չեմ ուզում ոչ մեկին տեսնել,
Ցավացող վերքով, լացող աչքերով,
Թեկուզ էկրանին կուզեմ ձեզ տեսնել,
Աշխարհի՛ մարդիկ, միայն ծիծաղով:

ՆԱԻՐԱ ԻԳԻԹՅԱՆ
Աշտարակի շրջան, գ. Օշական,
Մ. Մաշտոցի անվ. դպր.,
9-րդ դաս.



**ՍԱՀԱԿ ՀՈՎՍԵՓՅԱՆ, 10 տ.**
**«ՁՄԵՌ»**

ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

# ՎԱԽԸ

Առավոտյան, պապի գնալուց հետո, տղան թաքուն բռնել էր սարի դեռ ամայի ճամփան: Սարի ճամփան բլուրների արանքով՝ ձորի բարձր ափի հետ ոլորվող ճամփա էր և այնքան էր լայն, որ հին ժամանակ երկու սայլ իրար կողքով հազիվ էին անցնում: Բայց ոտքի համար լավ էր, և հին, անիվներից մաշված, փոս ընկած տեղերը չմտնելով, տղան գնում էր ճամփամիջյան փափուկ, խոտոտ շերտով:

Նա ապահով էր ու համոզված, որ պապը պիտի իր հեռուներից անպայման տեսնի իրեն և ամայի հանդերում ինքը մենակ չի մնա: Ոչխարը խոտհարքներ լցնող հովիվներն էլ կտեսնեն իրեն ու թաքուն դժկամությամբ հոտերը կքաշեն իրենց արոտատեղիները: Նա չէր տարբերում խոտհարքերն ու արոտատեղիները, բայց հովիվները չգիտեին, որ չի տարբերում: Նրանց կթվար, որ ինքը պապի հետ համդապահություն է անում և պապը իր ետևից թաքուն գալիս է: Ինքը, ահա, միամիտ երեխայի պես մոտենում է հովվին, հովիվը պարապ ու կասկածելի հարցնում է իր սար գալու մասին, իր՝ հովվի, երեխաների մասին, ու հոտն էլ խոտհարքում է: Հովիվն այնպես է խոսում, որ կարծես հոտը խոտհարքում չէ, իր համար արածում է, բայց այդ ժամանակ պապը կերևա հովվի աչքին ու հովիվը

Նկ. ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

չի էլ հասցնի հոտը խոտհարքից ետ քաշել: Պապը ուժեղ կբարկանա. «Էդ որ ոչխարը հիմի լցրել ես մեջը, բա ձմեռն ի՞նչ պիտի ուտի կովը, չոր ծղոտից նա ի՞նչ պիտի տա. բա էս երեխեն, բա քո երեխեն սաղ ձմեռն անկաթ, անյուղ ո՞նց պիտի ապրեն, հը՞: (Իրեն՝ տղային, բոթելու պես ցույց տալով) եկել իր ոտքով հանդապահություն է անում, դու չես էլ ասում, թե՝ երեխա է, ինչ է՝ մարդ է, հաշվի չես առնում, բայց էս խոտն էլ, էս ոչխարն էլ, էս սարն էլ էս երեխունն են, եկել է՝ գլխին կանգնի»: Բայց պապը չըգիտի, որ ինքը սար՝ իր մոտ է գնում: Ինքը կարող է խոտհարքը ոչխար լցրած հովվի իրոք հանդիպի, հովիվը պարապ ու կասկածելի հարցնի իր սար գալու կամ իր՝ հովվի, երեխաների մասին, և պապը չլինի, որ իր ետևից երևա հովվի աչքին: Հովիվը չի էլ իմանա, որ ինքը իր ոտքով եկել է էս խոտի, էս ոչխարի, էս սարի գլխին հանդապահություն անելու:

Բայց նա չէր հավատում, որ մինչև ոչխարը խոտհարքի մեջ բռնելը պապին գուցե չհանդիպի: Պապը այս անվերջորեն տարածուն հանդերում ու բլուրների վրա միայն մի տեղում չի կանգնի: Նա պիտի առավոտից իրիկուն պտտվի խոտհարքներում ու բլրալանջերին, որտեղից իրեն անպայման կտեսնի: Տղան հայացքով հեռու-հեռուներում՝ սարալանջերի ու բլրալանջերի վրա, թեք իջնող հանդերում անհամբեր որոնում էր ձիավորի տեսք ու ստվեր, և միաժամանակ իրեն անընդհատ համոզում, որ պապն այդքան մոտիկ չի լինի. դեռ պետք է սար հասնել: Պապն անպայման սարում կլինի, և այնտեղից ավելի շուտ ինքը նրան կերևա:

Արտույտը ձագերին էր թռչել սովորեցնում, ճնճղուկն իջել էր ձորը, մեղուն կարճ վազվզում էր ծաղկից ծաղիկ, և տղային միայն արծիվն էր տեսնում: Եթե հնձի ժամանակը լիներ, հանդերում հնձվորներ ու խոտ հավաքողներ կլինեին, և միայնակ տղան սարի ճամփին, արծվի պաղ թռիչքի տակ իրեն պարապ ու լքված չէր զգա: Արծիվը շատ բարձր էր և գուցե պապին էլ էր տեսնում, բայց դիմացի բլուրները իրենից այնքան բարձր էին թվում, որ դըրան չէր հավատում:

Դիմացի հեռու սարալանջին արդեն ոչխարի հոտ էր երևացել, որ տղային անընդհատ հստակ ու մոտիկ էր թվում. ահա կանգնի ցածրիկ գոգահովիտը, կբարձրանա բլրի ստորոտի դիքը և կկանգնի ուղիղ հոտի սարալանջի տակ: Բայց դա ոչխարի հոտ չէր, դա գառների հոտն էր, ու գառնարած հովիվը Վարդևան քեռու տասնըչորս-տասնհինգ տարեկան Սաքոն է: Նրա պառկած դիրքից մի ափ երևացող երկընքում ամեն ինչ իր համար փակ ու խաղաղ էր:

Արծվի ուժեղ թռիչքի հարվածը միայն տղայի աչքի դեմ էր: Ամլիկ գառը շատ փոքր էր ու նույնիսկ մենակ մնալուց չէր վախենում: Նա հավի չափ էր, թույլ ու միամիտ, և արծիվը գիտեր, որ նա պիտի անպայման ետ մնա: Արծիվը ուժեղ սլացքով իջնում էր: Կարծես նրա սլացքի տակ առանձնացավ ամլիկ գառը, և տղան հայացքը նորից հոտին գցեց, երբ արծիվը խփեց գառանն ու դեռ ցածրից կողքի թըռավ: Գառը նրա մագիլների մեջ էր, ու արծիվը թռչում էր գառան ծանրությունից թեքված: Հովիվը երևի արդեն քնած էր, նա ոչինչ չտեսավ, թե չէ կարող էր վազել արծվի հետևից ու մահակով հենց օդի մեջ խփել նրան: Շունը մեջքի կողմից վտանգ ու հոտ զգաց ու մինչև վտանգը գտնելը՝ արծիվն արդեն գառը տարել էր: Հոտը վախից արագ կծկվեց ուրիշ կողմի վրա ու միամիտ նայեց: Հոտի այդ արագ շարժումից խոտերի ու լռության մեջ երևի թե աղմուկ պտտվեց, բայց երբ միանգամից երևաց հովվի հասակը, արծիվն արդեն շատ էր բարձր ու հեռու: Շունն արագ պտտվեց հոտի շուրջը, կանգնած ու ապարդյուն հաչեց և արծվի գնացած ուղղությամբ մի քիչ վազեց: Գառներն իրար անցած մայում էին, և հովիվը ցածրերում, խոտերի մեջ գայլ փնտրեց ու երկար գոռաց հոտի վրա: Բայց այդ ձայնից տղայի շուրջը ամայի դատարկություն զրնգաց, և տղան վտանգի մեջ հովվին ու իրեն տեսավ միայնակ լքված ու ամբողջ ձայնով գոռաց.

— Հե՜յ, արծի՜վը, արծի՜վը, հե՜յ, տարա՛վ, տարա՜վ...

Նա տեսավ, թե արծիվն ինչպես անցավ սարի ետևն ու մտածեց, որ նրա բույնը սարի կատարին պիտի լինի:

— Է-հե՜-հե՜յ, արծի՜վը, հե՜յ, արծիվը գա՛ռ տարավ, հե՜յ...

Տղան չէր համոզվում, որ հովիվն իրեն չի լսում և անվերջ գոռգոռում էր ու առաջ վազում: Նա դեռ ճանապարհից ոչ մի անգամ դուրս չէր եկել:

Աչքը երկնքին՝ նա բարձր կետեր էր փնտրում, և մի պահ ցածր թռչող արտույտի մարմինը իրեն արծիվ թվաց, որ պը-

տըտվում էր իր գլխավերևում: Դա նրան միանգամից կանգնեցրեց:

Առջևի բարձր, դեղին ծաղկի մեջ մեղուն անվերջ բզզում էր:

— Պապի՜,— պոռթկուն կանչեց տղան, — պապի՜:

Նրա լացը եկավ: Անտանելի, անվերջ պատժի պես դատարկություն էր, և կարծես թե ոչինչ չէր կարելի անել: Նա ոտքը քայլի ձգեց, բայց չկարողացավ քայլ անել և հանկարծ հիշեց, որ պապն ամեն օր հեռու սարերում միայնակ թափառում է: Տղան դատարկ պարկի նման ճռճռուն ու թույլ նստեց դեղին ծաղկի կողքին, և հեռացած, այլևս անկրկնելի պատկերի նըման աչքի առաջ եկավ անցած օրվա իրիկնադեմը, երբ դույլով ջուր էր տանում ձիուն: Այն ժամանակ պապը սարից սունկ էր բերել ու պիտի խորովեր, և ինքն այնքան արագ էր գնում ձիու մոտ, որ ջուրը դույլի եզրերից թափվում էր: Ձեռքին կոկլիկ ճիպոտ ուներ և թռչկոտելու պես արագ քայլքի հետ եղինջի գլուխներ էր թռցնում: Բայց հիմա ոչինչ չուներ, գնալու տեղ էլ չուներ: Ուզում էր սար՝ պապի մոտ գնալ, և թվում էր, թե սարը շատ է մոտիկ: Բայց դա առավոտյան էր, իսկ հիմա զռռով զսպում էր իրեն, որ լաց չլինի: Տունը հեռու էր, սարը հեռու էր, գառների հոտը հեռու էր, և որ կողմ էլ շարժվեր, միևնույն է՝ արծվի աչքին կերևար:

Նա նորից նայեց գառների հոտին, որ գոնե աչքի առաջ հովվին տեսնի, բայց հոտը չերևաց. երևի անցել էր բլուրների հակառակ լանջերը: Արծիվը կրկին պըտըտվում էր բլուրների ու հանդերի վրա, բայց հիմա կարծես չարացած էր և պըտույտն անում էր արագ ու փոքր: Տղան կռացած_ու արագ թռավ ճանապարհի փռսացած անվատեղերից ու իրեն նետեց բարձր թփերի մեջ: Չորեքթաթ կռացած, չորացած շուրթերը կիսաբաց՝ նա անշարժ նայում էր արծվին ու բոլորովին չէր զգում ծնկների ցավը: Արծիվն արդեն բարձր էր, տղան կռացած, արագ վազեց դեպի թմբի վրայի քարակույտը, վերնաշապիկի փեշը գոգ արեց ու քար լցրած մտավ թփերի մեջ:

Արդեն այնպես էր նայում արծվին, կարծես գիտեր, որ նա պիտի անպայման իր վրա գա, և ամուր ու պրկված երկու ձեռքում էլ քար էր սեղմում: Բայց արծիվը կարծես հեռացավ ու մի պահ թվաց, թե այդքան փոքր ու հեռու էլ կմնա: Տըղան մի հայացքով նայեց շուրջը և քարձըր թփերի միջից ոչինչ չտեսավ: Նա մտածեց, որ երևի թաքնված է արծվի աչքից: Անմիջապես սկսեց խոտ պոկոտել ու ցանելով թփերի ամուր ցողունների կատարին, ծածկեց իրեն:

Քիչ հետո նա թփերի մեջ թաքնված, խոտերով ծածկված մի քիչ ապահով էր զգում իրեն և քարերն անմիջապես ձեռքի տակ պահած՝ սպասում էր: Վախը դանդաղ անցնում էր, սար չհասնելու աղոտ ափսոսանք էր զգում և պատկերացնում էր սարերում միամիտ պտտվող պապին, որ չգիտի իր տեղն ու վիճակը: Եվ ոչ միայն պապը, այլև ոչ ոք չգիտի իր տեղը: Բայց վախը այլևս կաշկանդող վախ չէր, և տղան չզգաց էլ, թե ինչպես արծվին էլ չհիշելով՝ ինքնամոռաց սկսեց վազել ճանապարհի եզրերով: Նա չգիտեր, որ դեպի տուն չի վազում, սար է վազում՝ զույգ բռունցքներում ամուր սեղմելով մոռացած քարերը: Աչքի առաջ միայն ճանապարհն էր երևում՝ անհարթ մաշված ու անվերջըրեն միալար: Նա առաջին անգամն էր սար գնում ու դեռ չէր կարողանում տարբերել հանդերը, փոխվող խոտը և հովի պաղության չափը: Բայց արդեն շունչը կտրվում էր և պիտի կանգներ: Մշուշ, կլոր շրջանակներ, գետին ու սարի ճամփա էր պտտվում նրա աչքի առաջ, և նա հուսահատ ու այլևս անտարբեր՝ անօգ կանգնեց ճամփի մեջտեղում: Հոգնությունից ոչ որևէ բան էր կարողանում մտածել, ոչ էլ արծվի ահ էր զգում: Խաղաղ ու անտարբեր հևալով մեկնվեց կանաչի վրա, ու պառկած դիրքից հայացքն ընկավ դատարկ երկնքին: Արևն արդեն թեքվել էր ու հեռվի մշուշը կարծես ավելի էր երկարել: Մշուշի տակ փոսորակներում ու ձորակներում օդի միջով թափանցիկ, տարտամ ստվերներ էին ձգվել, և թվում էր օդը ողողվել է անորոշ, աներևույթ մի բազմությամբ:

Տղան անակնկալի եկած վեր կացավ, սթափ, զգույշ հայացք պտտեց շուրջը և ստվերներով ողողված օդում հեռվի մշուշի տակ տեսավ ուրթը, ոչխարի փարախը և բլուրներից բարձր, սրագագաթ սարի ստվերում փռված գառների հոտը: Նա փորձեց ավելի մանրակրկիտ նայել, որովհետև պապի ներկայության միակ հույսը այդ կողմերում պիտի արդարանար, բայց պապին չտեսավ: Ուրթի ու փարախի հեռվից շների հաչոց եկավ, ներքևներից, ուր ցածր գոգահովիտ էր ու տղայի կանգնած տեղից չէր երևում, նախրի քառաչ ու ցու-

լի մունչոց եկավ, և բարակ, վճիտ հովը ոչխարի մածունի, տարթի ու կաթի խառը, ողողուն բույր բերեց: Բայց ամեն ինչ այնքան խաղաղ էր, որ տղային թվաց, թե դեռ առավոտ է և ոչխարն ու նախիրը նոր են արոտի ելել:

— Օվանե՛ս, ա՛յ տղա, Օվանե՛ս,— մի թանձր ու ծանր կանչ եկավ ողողեց նրան, և անակնկալից տղան չիմացավ որ կողմը շրջվի, բայց ոտքերը իրեն ետ շրջեցին:

Ներքևում ձիու սանձից բռնած կանգնել էր պապը, և երբ հայացքը տղայի հայացքին առավ, նա թողեց սանձը, արագ քայլեց դեպի տղան, ու ձին էլ արածելով եկավ նրա ետևից:

— Էս ո՞նց ես էստեղ հասել,— ձայնեց պապը:

— Բա որ չտեսնեի՝ ո՞նց էիր տուն գընալու,— ասաց պապը արդեն մոտիկից:

Տղան ձայն չէր հանում, բայց պապը դեռ չգիտեր, որ նա արծվից վախեցել է:

— Ախր հաներում հիմի մարդ էլ չկա, — տղայի ձեռքը բռնելով ասաց պապը:

Տղան լուռ էր, ու պապն էլ լռեց: Պապը գուցե թե մտքում վախեցավ, որ առանց էն էլ ոնց որ թոռան լացը եկել է ու հիմա իր լավ խոսքից կարող է հանկարծ լացի: Բայց թոռը չէր լացելու, նրա լացը ճիշտ է, եկել էր, բայց դա շուտ էր եղել: Այդքանը տղան կռահեց, բայց արդեն մեծի կռահում էր դա:

— Ձիուն նստեցնե՞մ,— ասաց պապը, — բեզարած կլինես:

— Չէ՛,— ասաց տղան,— էսպես լավ է:

Նրա ձայնից պապն ուրախացավ ու ծիծաղեց:

Բայց տղան էլ ձայն չէր ուզում հանել:

— Արծիվը գառ էր տարել,— ասաց պապը,— սարի էն կողմում էր, քարին դրել հանգստանում էր՝ վրա հասա:

Ձին ետևներում փռփռացրեց ու ցնցվելուց սանձի երկաթները զնգզնգացին:

— Բայց շատ էր բեզարած,— ասաց պապը,— փորձեց գառը տանել. հեռվից էր ինձ տեսել, է՛, փորձեց, բայց շուտ վրա հասա:

Տղան խռովածի նման էր նայում պապին, ձայն չէր հանում, մեծի ծանր քայլեր էր ջանում գցել ու պապի նայվածքների տակ այնպես էր կքում գլուխը, որ պապին էլ, ուրիշ նայողներին էլ անպայման կըթվար, թե նա համառ խռոված տղան չէ, նրա դեմքը սարի արևը վառել-կարմրեցըրել է, ու հիմա հովի մեջ ուժեղ կծկծում է:



**ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ**

# ՄԵՐ ՀԱՎԵՐԸ ՁԱՐԳԱՑԱՆ, ԿՈՒՏ ՈՒՏԵԼԸ ՄՈՌԱՑԱՆ...

Մի ժամանակ օր չկար, որ ուրախ աղմուկ-աղաղակով լի չլիներ մեր բակը: Առավոտից իրիկուն խաղում էինք պահմըտոցի, յոթ քար, ֆուտբոլ, գործագործ: Եվ հաճախ էր մեր գնդակը փշրում առաջին հարկերի պատուհաններից որևէ մեկի ապակին: Ու անմիջապես բակը դատարկվում էր, թաքստոցներից մենք տխուր դիտում էինք, թե ինչպես է բարկացած տանտերը դանակով պատառոտում մեր գնդակն ու դուրս շպրտում: Հաջորդ օրը խաղը շարունակվում էր, և ասես թաքուն մի պայքար ու նույնիսկ թշնամություն կար երեխաներիս և առաջին հարկի որոշ բնակիչների միջև: Մենք պաշտպանում էինք խաղալու մեր իրավունքը, պաշտպանում էինք այգիների ցանկապատերով ու ավտոտնակներով պաշարված մեր մանկությունը: Եվ միշտ հաղթողը կարծես մենք էինք, որովհետև բակը ամեն օր ուրախ ժխորի մեջ էր: «Գլուխներս տարա՜ք»,— գոռում էին առաջին հարկի բնակիչները, իսկ մենք ուրիշ գլխի կարիք չունեինք, մենք մեր գլուխն ունեինք և շարունակում էինք մեր խաղը, վիճում ու կռվում, թե ով պետք է գնդակը ետ բերի բարձր ցանկապատով ու փշալարերով շրջափակված այգուց, նա՞, ով գնդակը այնտեղ է գցել, թե՞ նա, ով պետք է գնդակը վերստին խաղի մեջ դնի: Մեր ֆուտբոլային խաղերն այնքան հրապուրիչ էին, որ հաճախ ձըգում էին նաև շենքի մեծահասակ, ընտանիքավոր տղամարդկանց: Մի օր նրանք պարզապես չհամբերեցին ու... իրենք էլ ցանկություն հայտնեցին խաղալ: Թիմ հանեցին կ՝ ոմանք կլորիկ փորերով, առանց մարզական կոշիկների, խաղալ սկսեցին: Մեր աղմուկ-ժխորին գումարվեց նրանցը: Նրանք մեզանից շատ էին աղմկում ու միմյանց վրա բարկանում, երբ մեր՝ անչափահասների թիմը խփում էր մի գոլ ևս:

Ինչո՞ւ հանկարծ այսօր այս ամենը հիշեցի: Այսօր հանկարծ շա՜տ, շա՜տ մեծ ցանկություն ունեցա ֆուտբոլ խաղալ ու դուրս եկա բակ: Բակը շատ խաղաղ էր, խաղացող երեխա չկար: Եթե մեկնումեկը երևար՝ ձեռքին գնդակ, ես անպայման կըմիանայի նրան: Բակում երեխա չէր երևում: Նրանք խումբ-խումբ հավաքվել էին շենքի տարբեր անկյուններում, արևածաղկի սերմեր էին ուտում, մեկը-երկուսն էլ գողունի ծխում էին: Բոլորն էլ հագած էին գեղեցիկ ու նոր այնպիսի շորեր, որոնցով, իհարկե, ֆուտբոլ կամ մեկ այլ խաղ խաղալը նրանց մայրիկները հանցագործություն կհամարեին: Գեղեցիկ, արտասահմանյան պիտակներով վերնաշապիկներ ու անդրավարտիքներ էին հագել



համարյա բոլորը: Մի քանիսն էլ թեև մարզական գեղեցիկ սպիտակ ու երկնագույն երիզներով համազգեստներ էին հագել, սակայն չէր երևում, թե խաղալու մտադրություն ունեն, ընդհակառակը, նրանք հենց նոր լվացած ու պլպլացրած ավտոմեքենայի նստատեղերին ընկըղմված՝ մագնիտաֆոն էին լսում: Նրանց դեմքերից չէր զգացվում, որ գիտեն որևէ խաղ և խաղալու հաճույքի զգացողություն ունեն, թեև դպրոցական տարիքի են, այն

տարիքի, որի մեջ ես ու իմ հասակակիցները չգիտեինք ինչ է նշանակում խաղից կշտանալ: Նրանք, երևի, ո՛չ տեսել են, ո՛չ լսել, թե ընդհանրապես խաղալիս ինչպես կարելի է երկու թիմերի բաժանվել, ինչպես կարելի է ընկեր ընտրելու առաջին իրավունքը վիճարկել: Մեր ժամանակ երկու հոգի կանգնում էին իրար դիմաց ու «ոտ էին գցում»:

Իսկ երբ ուզում էինք որոշել, թե ով է «փակելու» պահմտոցի խաղալիս, կանգնում էինք կլոր շրջանով ու հաշվում.

**Ցա՛ն, ցա՛ն, ցա՜ն,**<br>
**Մեր հավերը զարգացա՜ն,**<br>
**Կուտ ուտելը մոռացան...**

Որ չամաչեմ՝ ամբողջը կարտասանեմ, լավ եմ հիշում:

Հիշում եմ նաև պառավ Նազոյին, որի պատուհանի ապակին մի անգամ ջարդեցինք: Նա գլուխը դուրս հանեց պատուհանից և անեծք էր որ թափեց բերանից. «Աստված ջան,— աղաղակեց նա,— էս խաղերն աշխարհքի երեսից ե՞րբ կվերանան»: Հիմա կշտացա՞ր, մտքումս ասում եմ նրան, հիմա հանգիստ ու ապահով ապրիր տանդ մեջ: Բայց ո՛վ գիտե, գուցե նա էլ է հիմա շատ տխրում, որ երեխաների խաղերը, աղմուկ-աղաղակը բակից վերացել են:

Տանը մենակ էի: Տխրությունից չգիտեի ինչ անեի: Բարեբախտաբար եկավ մանկության ընկերս: Պարզվեց, որ նրա տրամադրությունն էլ է ընկած, և ահա թե ինչու:

— Կնոջս հետ մի փոքր վիճել եմ, խոստովանեց նա,— շենքի երեխաները գնդակով մեր պատուհանի ապակին նորից փշրեցին: Բնակարանը փոխել չենք կարողանում, ոչ ոք չի ուզում առաջին հարկում ապրել: Երեխաներն էլ խիղճ-աստված կորցրել են, շաբաթը մեկ նոր ապակի եմ գցում: Պառավ Նազոյի օրն ընկանք...

Մանկության հուշերը երկուսիս տրամադրությունն էլ բացեցին:

— Սարսափելի բան կկատարվի աշխարհի հետ,— ասացի ես,— եթե աշխարհի երեխաները մոռանան խաղալը: Մի նեղսրտի, հիշիր մեզ այդ տարիքում: Ոչինչ, որ տունդ առաջին հարկում է, որ ստիպված ես հաճախ ապակի գցող հրավիրել: Լավ է, որ ձեր բակում չեն դադարում երեխաների խաղերը: Իսկ մեր բակում, ցավոք... ոնց որ թե «մեր հավերը զարգացել են...»

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# Ամպրոպն ու ամպերը

Ամպրոպն ապրում է ամպերում<br>
(Այլ տեղ չունի նա ապրելու):<br>
Ծառահաւոյալ՝ ամպերի հետ<br>
Չվում է միշտ առաջ ու ետ:<br>
Հար հնազանդ կամքին քամու՝<br>
Գնում է՝ ուր նա է տանում...

Ամպրոպն ապրում է ամպերում:<br>
Անգործության չի համբերում,<br>
Խենթանում է հանկարծակի,<br>
Առնում մտրակն իր կայծակի<br>
Ու մտրակով շեկ ու ճապուկ<br>
Դաղում ամպի մեջքը փափուկ,<br>
Իբր՝ դու այս ի՞նչ ես անում,<br>
Բեռները քո ու՞ր ես տանում՝<br>
Այս դաշտերին տալու տեղակ...<br>
Դե շուտ տեղա՛, տեղա՜, տեղա՛:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

# Գարնանը

Մի չար քամի սարերն ելավ,
Ծաղկունքի հետ ուզեց խաղալ:
Ծաղկունքն ասին.— Խելա՛ռ քամի,
Մենք ծաղկում ենք, մի՛ խանգարի...—
Քամին սուլեց, փնչաց նոթոտ,
Գնաց այգի՝ ծառերի մոտ:
Իսկ ծառերը ասին նրան.
— Մենք ծաղկում ենք, մի՛ խանգարի...—
Այդպես քամին առանց ընկեր
Թափառում էր սար ու ձորեր,
Ով պատահեր՝ գառնուկ, ուլիկ,
Թիթեռ ու խոտ, մեղու, ծիտիկ,
Խնդրում էր.— Եկ խաղանք մի քիչ:—
Եվ բոլորը մերժում էին.
— Խաղս որն է, չե՞ս տեսնում, որ
Գործ ենք անում մենք կարևոր:—
Քամին մնաց շվար, մոլոր,
Ուզեց ինքն էլ գտնի մի գործ:
Եվ ի՞նչ, գտավ... «Իմ գործն,— ասաց,—
Այն է՝ հանգիստ թողնեմ նրանց...»

# Արևն ու ամպը

Ամպ ու արև միասին
Պահմտոցի խաղացին,
Մերթ արևն էր թաքնվում
Խոժոռ ամպի ետևում,
Ամպն անցնում էր գողեգող՝
Նրան փնտրում ամեն կողմ,
Հետո ամպն էր պահ մտնում
Բարձր լեռան ծերպերում,
Իսկ արևը հնիհն
Հետքն էր փնտրում ամեն տեղ:
Խաղով տարված չիմացան,
Ինչպես բարձր լեռն անցան,
Մեկ էլ՝ եղավ իրիկուն,
Ամպը դարձավ շառագույն:
Ասաց.— Օրս անցավ զուր,
Դաշտը մնաց առանց ջուր:—
Իսկ արևը ի՞նչ աներ,
Տխրեց, ասաց.— Լավ խաղ չէր,
Ամբողջ օրը խաղացի
Մի ժամ արև չարեցի:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

**Ռ. ԳՈՍԻՆՆԻ**
(ֆրանսիացի գրող)



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Մեր դասարանում նորեկ կա: Կեսօրին նրան ուսուցչուհին բերեց հետր: Նա շիկակարմիր մազեր ունի, պեպենոտ է, աչքերը՝ կապույտակ, երեկվա իմ տանուլ տված գնդակի պես: Տանուլ տալուս պատճառը Մեքսանի անազնիվ խաղն էր:

— Տղանե՛ր,— ասաց ուսուցչուհին,— ահա ձեր նոր ընկերը: Նա օտարերկրացի է, ծնողները նրան մեր դպրոցն են տվել, որպեսզի ֆրանսերեն խոսել սովորի: Հուսով եմ, դուք նրան կօգնեք, ուշադիր կլինեք նրա նկատմամբ:

Հետո ուսուցչուհին դարձավ նորեկին ու ասաց:

— Նոր ընկերներիդ ասա անունդ:

Նորեկը չհասկացավ, թե ինչ է ուզում ուսուցչուհին, ժպտաց, և մենք տեսանք, թե ինչ առատ է նրա բերանն ատամներով.

— Ա՜յ քեզ բախտ,— ասաց հաստամարմին Ալցեստը, որը շարունակ ծամում է:— Այդպիսի ատամներով սա, երևի, հսկայական թիքաներ կպոկի:

Նորեկն առաջվա պես լուռ էր, և ուսուցչուհին մեզ ասաց, որ նրա անունը Ժորժ Մակինտոշ է:

— Այո,— ասաց նորեկը,— Ջորջ:

— Ներեցե՛ք, օրիո՛րդ,— հարցրեց Մեքսանը,— ի վերջո, նրա անունը Ժո՞րժ է, թե՞ Ջորջ:

Ուսուցչուհին բացատրեց մեզ, որ նորեկի անունը Ժորժ է, բայց նրա մայրենի լեզվով այն արտասանվում է Ջորջ:

— Լավ,— ասաց Մեքսանը,— մենք նրան Ժոժո կկանչենք:

— Ո՜չ,— ասաց Ժոաշենը,— այդ դեպքում ավելի լավ է Ջոջո:

— Ձայնդ կտրի՛ր, Ջոաշեն,— ասաց Մեքսանը, և ուսուցչուհին երկուսին էլ անկյուն կանգնեցրեց:

Ուսուցչուհին Ջորջին Անյանի կողքին նստեցրեց: Անյանը նրան թերահավատությամբ վերաբերվեց, ինքը գերազանցիկ էր և ուսուցչուհու սիրելին, այդ պատճառով վախենում էր նորեկներից. հանկարծ սրանք էլ դառնան գերազանցիկ և ուսուցչուհու սիրելին: Բայց մեր կարծիքով, Անյանը միանգամայն հանգիստ կարող էր լինել:

Ջորջն նստեց և իր ողջ ատամնաշատ բերանով շարունակեց ժպտալ:

— Ափսո՜ս, որ ձեզնից ոչ մեկն անգլերեն չգիտի,— ասաց ուսուցչուհին:

— Ես տիրապետում եմ այդ լեզվի նախնական գիտելիքներին,— ասաց Անյանը, որն իսկապես էլ լավ էր բլբլացնում: Բայց երբ Անյանը փորձեց փայլել իր նախնական Ջորջի առջև, սա նայեց նրան, հետո ծիծաղեց ու մատը քունքի մոտ պտտեցրեց: Անյանը շատ վիրավորվեց, բայց Ջորջն իրավացի էր: Հետո պարզվեց, որ Անյանն ասել է, թե ինքը մի կուսույում ունի, որը շատ հարուստ է, իսկ քեռու այրին ավելի մեծ է, քան նրաքրոջ գլխարկը: Խեյքր լրիվ թոցրել է:

Զանգը տալուն պես բոլորը դուրս եկան, միայն Ժոաշենը, Մեքսանն ու Կլոտերը մնացին դասարանում, որովհետև պատըժվել էին: Կլոտերը «երկուսներով» է սովորում և այսօր էլ դասը չէր սովորել: Հենց որ նրան դաս են հարցնում, հետո չեն թողնում դասամիջոցին դուրս գալ:

Բակում տղաները շրջապատել էին Ջորջին: Բոլորն, իրար բերնից խոսք խլելով, հարցեր էին տալիս, բայց նա միայն ժպտում էր: Հետո խոսեց, բայց ոչ ոք ոչինչ չհասկացավ, որովհետև շարունակ պնդում էր «ուինշուինշուինչ» և ուրիշ ոչինչ:

— Բանն այն է,— ասաց Ժոֆրուան, որը հաճախ է կինո գնում,— որ սա կրկնօրինակված չէ: Ա՜յ, եթե սա տիտրեր ունենար:

— Ես փորձեմ թարգմանել,— ասաց Անյանը: Սա ուզում էր մի անգամ էլ գործի դնել իր նախնականը:

— Իսկ դու,— ասաց Ռյուֆուսը,— դու ուղղակի հիմար ես:

Այս բառերը շատ դուր եկան նորեկին.



նա մատով ցույց տվեց Անյանին ու ասաց. «Ու հիմարհիմարհիմար»:

Նա շատ գոհ էր: Անյանն արտասվեց ու հեռացավ: Իսկ մեզ Ջոջոն դուր եկավ, և ես մի կտոր կոտրեցի իմ շոկոլադից, որ մայրիկս էր դրել հետս, և տվեցի նրան:

— Ձեզ մոտ ի՞նչ սպորտով են զբաղվում,— հարցրեց Էդը:

Ջոջոն, իհարկե, ոչինչ չհասկացավ, նա շարունակում էր պնդել՝ «Հիմարհիմարհիմար», իսկ Ժոֆրուան պատասխանեց.

— Համա թե հարց ես տալիս, թենիս են խաղում, էլ ի՞նչ պիտի խաղան:

— Ապուշի՛ մեկը,— բղավեց Էդը,— քեզ հետ չեմ խոսում:

— Ապուշի մեկը: Հիմարհիմար,— ուրախացած բացականչեց նորեկը:

Բայց Ժոֆրուային դուր չեկավ, որ Էդն այդպես նրան անվանեց:

— Ո՞վ է ապուշը,— հարցրեց նա, և բոլորովին իզուր հարցրեց, որովհետև Էդը շատ ուժեղ է և շատ է սիրում բռունցքով քթին հարվածել, և Ժոֆրուայի քթի բախտը չբերեց: Տեսնելով Էդի բռունցքը Ջոջոն դադարեց «հիմարհիմար» և «ապուշի մեկը» կրկնել: Նա նայեց Էդին և ասաց.

— Ա, բոքսինգ:

Եվ բռունցքներն սեղմելով՝ սկսեց պար գալ Էդի շուրջը, ինչպես բռնցքամարտիկներն են անում:

— Սրան ի՞նչ պատահեց,— հարցրեց Էդը:

— Նա ուզում է քեզ հետ բռնցքամարտել, դմբո՛,— քիթը տրորելով՝ պատասխանեց Ժոֆրուան: Էդն ասաց «լավ» և ուզում էր Ջոջոյի քթին խփել, բայց վրիպեց: Ջոջոն շատ ավելի լավ էր կռվում, քան Էդը: Նա սրան այնպիսի հարվածներ հասցրեց, որ Էդն սկսեց բարկանալ:

— Ինչպե՞ս պետք է կռվեմ դրա հետ, եթե շարունակ թռչկոտում է,— բղավեց Էդը և՝ «շըրըխկ», այնպիսի հարված ըստացավ, որ նույնիսկ նստեց գետնին: Բայց Էդը չվիրավորվեց:

— Համա թե ուժեղ ես,— ասաց նա վեր կենալով:

— Ուժե՛ղ հիմար, ապուշի՛ մեկը,— պատասխանեց նորեկը:

Նա շատ շուտ է ամեն բան յուրացնում: Դասամիջոցն ավարտվեց, և Ալցեստն, ինչպես միշտ, դժգոհեց, որ ժամանակ չունեցավ չորրորդ բուտերբրոդը մինչև վերջ ուտել:

Հենց որ դասարան մտանք, ուսուցչու-

 քին հարցրեց Ջոջոյին, թե իրեն լա՞վ է զգում նոր միջավայրում, բայց նույն պահին վեր կացավ Անյանն ու ասաց.

— Օրիո՛րդ, սրանք նրան հայհոյել են սովորեցնում:

— Սու՛տ է, ստո՛ր խաբեբա,— բղավեց Կլոտերը, որը դասամիջոցին դուրս չէր եկել դասարանից:

— Հիմա՛ր, ապուշի՛ մեկը, ստո՛ր խաբեբա,— հպարտ արտասանեց Ջոջոն:

Մենք լուռ նստած էինք, որովհետև երևում էր, որ ուսուցչուհին շատ դժգոհ է:

— Ամոթ է չարաշահել ձեր ընկերոջ ֆրանսերեն չիմանալը: Ես ձեզ խնդրեցի ուշադիր լինել նրա նկատմամբ, բայց մի՞թե ձեզ վրա կարելի է հույս դնել: Դուք վայրենիների, անկիրթների պես եք ձեզ պահել:

— Հիմա՛ր, ապուշի՛ մեկը, ստո՛ր խաբեբա, վայրենինե՛ր, անկիրթնե՛ր,— ասաց Ջոջոն: Քանի գնում նա ավելի էր ուրախանում, որ այդքան շատ նոր բառեր է սովորել:

Ուսուցչուհին ապշած նայեց նրան:

— Բայց... բայց, Ժո՛րժ,— ասաց Անյանը,— պետք չէ այդպիսի բաներ ասել:

— Եթե չես ուզում, որ քեզ պատժեմ, Անյա՛ն,— բղավեց ուսուցչուհին,— նկատողություններդ քե՞զ պահիր:

Անյանը լաց եղավ: Այդ րոպեին մեկը բղավեց.

— Խաբարբզի՛կ:

Լավ է, որ ուսուցչուհին չիմացավ, թե ով էր այդ մեկը, թե չէ բաժինս կրստանայի: Անյանն սկսեց գլորվել գետնին ու գոռգոռալ, թե ոչ ոք իրեն չի սիրում, որ դա սոսկալի է ու որ ինքը կմեռնի, և ուսուցչուհին ստիպված եղավ դուրս տանել նրան լվացվելու և հանգստացնելու:

Երբ ուսուցչուհին Անյանի հետ վերադարձավ, նա շատ հոգնած տեսք ուներ, բայց այդ պահին, բարեբախտաբար, հնչեց զանգը: Դուրս գալուց առաջ ուսուցչուհին նայեց նորեկին ու ասաց.

— Հետաքրքիր է, թե ինչ կմտածեն ծնողներդ:

— Խաբարբզիկ,— պատասխանեց Ջոջոն ու սեղմեց նրա ձեռքը:

Իզուր էր անհանգստանում ուսուցչուհին, Ջոջոյի ծնողները, հավանաբար, մտածել էին՝ ինչ պետք էր, որ տղան ֆրանսերեն սովորեր, նա արդեն սովորել էր:

Եվ այդ պատճառով Ջոջոն այլևս մեր դպրոցը չեկավ:



ԳԱՌՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ

# Հեքիաթ

Բացատի մեջ երկար մի սեղան է դրված,
Վրան՝ անուշ մրգեր ու խորտիկներ համեղ,
Եվ սեղանի շուրջը նստած քեֆ են անում
Կանաչ այդ անտառի բնակիչներն ամեն:

Առյուծն ու եղջերուն գրույցով են տարված,
Ճնճղուկին է տալիս աղվեսն ընկույզ ու չիր,
Լուսանի հետ գայլը վայելում է գինի,
Եվ մեղրով է վագրը հյուրասիրում արջին:

Անհոգ քեֆ են անում այդ անտառում կանաչ
Ու գզվրտուք չկա, ու արյուն չեն թափում,
Առյուծն ու շլդիկը նույն իրավունքն ունեն,
Մեծությունը այստեղ բարությամբ են
չափում:







Լենինականի Վարդբաղ կոչվող ձորակում ստեղծվել է մարզական հիանալի կենտրոն: Ամիսներ առաջ այստեղ հյուրընկալվեց 1967—69 թվականներին ծնված մականորդուհիների Տաջիկըստանի հավաքականը:

Տաջիկ մականորդուհիները, ինչպես նաև լենինականցի մարզուհիները, նվաճել են համամիութենական երիտասարդական խաղերի եզրափակիչի ուղեգրեր:

Վարդբաղի համալիրում մարզումները անցկացվեցին մարզիչներ Հրաչյա և Հրանտ Պետրոսյանների ղեկավարությամբ: Հյուրերի և տանտերերի մարզումների, ժամանցի ու հանգստի համար ստեղծվել էին լավագույն պայմաններ:

Պարապմունքները օրական երկու անգամ էին անցկացվում՝ տարբեր մարզադաշտերում, որպեսզի դպրոցականները ընտելանան տարբեր մրցապայմանների:

Հրաչյա Պետրոսյանը պատմում է.

— Մարզումների ժամանակ հատուկ ուշադրություն ենք դարձնում մականորդուհիների տեխնիկական, տակտիկական և ֆիզիկական վարժություններին:

Հագեցած էր մարզուհիների առօրյան: Ազատ պահերին նրանց համար կազմակերպվում էին կինոնկարների դիտումներ և էքսկուրսիաներ: Մարզուհիները եղան Ավետիք Իսահակյանի, Բագրատ Ղարիբջանյանի տուն-թանգարաններում, մարտական և աշխատանքային փառքի հուշահամալիրում, դիտեցին պիոներների պալատի խմբերի ելույթները, քաղաքը զարդարող հին ու նոր կոթողները: Հյուրերը շատ էին լսել «Մասիս» կոշիկի միավորման մասին և հաճույքով այցելեցին ֆաբրիկա:

Հյուրերի համար մերձքաղաքային էքսկուրսիաներ ևս կազմակերպվեցին: Նրանց դուր եկան հատկապես Հառիճի և Վահրամաբերդի հուշահամալիրները, թանգարանները:

Խմբի ղեկավար Եկատերինա Դոնչենկոն հրաժեշտից առաջ իր հիացմունքն այսպես արտահայտեց.

— Բարեկամները միմյանց հրաժեշտ չեն տալիս: Նըրանք շարունակ փայփայում են վերստին հանդիպելու ակընկալությունը: Սիրով հրավիրում ենք ձեզ այգիների քաղաք մեր Դուշանբեն: Լենինականցի մարզուհիների հետ մենք վաղեմի ծանոթներ ենք: Դեռևս Մաձգիլանում անցկացված մրցումների ժամանակ նրանք լավ տպավորություն թողեցին, աչքի ընկան արդյունավետ, համագործակցված խաղով, արագաշարժությամբ ու համերաշխությամբ: Եվ պատահական չէ, որ շահեցին «Հաղթանակի կամքի համար» մրցանակը: Իսկ Լենինականի ջերմ ընդունելությունը, համատեղ մարզումները վեր էին մեր սպասածից:

Պարապմունքները շարունակելու նպատակով տաջիկ մարզուհիները մեկնեցին Լենինգրադ: Այս տարի նըրանք հայ մականորդուհիների հետ կմասնակցեն համամիութենական խաղերին:

Հաջողություն նրանց: Նման մրցումներում հաղթում է բարեկամությունը:

ՌՈԲԵՐՏ ՀԱԿՈԲՅԱՆ






# Սովորեցնում եմ, նաև սովորում

Երիտասարդ բանաստեղծ Գառնիկ Մկրտչյանը անցյալ ուսումնական տարում ավարտել է Երևանի պետական համալսարանի բանասիրական ֆակուլտետը և հենց նույն տարվանից աշխատում է Ստ. Շահումյանի անվան № 1 դպրոցում որպես լեզվի և գրականության ուսուցիչ: Նա աշխատելու առաջին իսկ օրերից գրառումներ է կատարում դպրոցական առօրյայի վերաբերյալ, որից ընթերցողի ուշադրությանն ենք ներկայացնում հատվածներ:

## 1. «ՁԵԶ ԹԱՔՈՒՆ ԲԱՆ ՈՒՆԵՄ ԱՍԵԼՈՒ...»

Դասերից հետո հինգերորդցիների մեջ ինչ-որ կատակից վեճեր էին ծագել: Վեճը վերածվել էր տուրուդմփոցի, որի ընթացքում Կարենը ոչ այնքան լուրջ վնասվածք էր ստացել: Ես իմացա հաջորդ օրը, հարցրի.

— Մայրդ տեսե՞լ է, լող քսե՞լ է վերքիդ, հայրդ իմացա՞վ...

Կարենը մի պահ շփոթվեց, ապա արագ, շուտասելուկի պես պատասխանեց.

— Մայրս տեսավ... ոչինչ, արդեն լավացել է:

Երբ դպրոցից խմբով դուրս էինք գալիս, Արսենը՝ դասարանի աշխույժ տղաներից մեկը, հարմար պահ գտնելով, շշնջաց ինձ.

— Ընկե՛ր Մկրտչյան, Ձեզ թաքուն բան ունեմ ասելու:

Առանձնացանք, և նա խորհրդավոր ձայնով, իբրև գաղտնիք, հաղորդեց ինձ.

— Գիտե՞ք... Կարենի հայրը մահացած է, դրա համար նա շփոթվեց:

Արսենի նրբանկատությունը զարմացրեց ինձ: Բարձրաձայն կամ ընկերների ներկայությամբ չասաց, կարողացավ զսպել իրեն: Այդ օրը ես յուրացրի իմ առաջին դասի թեման. երեխաներից ամեն մեկի կյանքով հետաքրքրվել, նրանց ընտանեկան վիճակի մասին ոորոշակի պատկերացում կազմել, նրանց նկատմամբ անհատական, անսխալ վերաբերմունք ունենալու համար:

## 2. ՏՂԱՄԱՐԴԿԱՅԻՆ ԽՈՍՏԱԿՈՒԹՅՈՒՆ

Արամը արտախառնուք ունէր: Գիշերը ուշ էր քնել՝ դեդեկտիվ ֆիլմ էր հեռուստացույցով դիտել: Առավոտյան դժվար և ուշ էր արթնացել, չէր հասցրել նախաճաշել: Նաև մոռացել էր նախաճաշի համար դրամ վերցնել: Ես Արամին դրամ առաջարկեցի և պատվիրեցի անպայման բուֆետ գնալ: Ընկերը՝ Հրանտը բորբոքվեց.

— Ինչպե՞ս, ինչո՞ւ, մենք

չե՞նք կարող...

Տասներկուամյա Հրանտի պատվասիրության զգացումը թույլ չտվեց, որ ընկերը, իրենց թողած, ուսուցչից դըրսում վերցնի նախաձաշելու համար: Չգիտեմ՝ իրավացի՞ է նա, որ իրեն այդպես ընկերոջն ավելի մոտ կանգնած համարեց, քան ուսուցչին: Բայց այդ վարմունքը իմ աչքում նրան բարձրացրեց:

### 3. ՆՐԲԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՊԱԿԱՍ

Դասերն ավարտվեցին և, որովհետև շատ էի շտապում, արագ դուրս եկա դպրոցից: Բակում վեցերորդցի Միքայելին տեսա: Այտը կարմրած էր.

— Ի՞նչ է պատահել:

— Ոչ մի բան:

Իսկ աչքերը լցված էին: Ուր որ է պիտի հեկեկար:

Շտապում էի, բայց, ի՞նչ արած, պիտի սպասեի: Եվ բացի այդ գուցե սա ավելի՞ կարևոր գործ էր:

— Արի դասարա՛ն գընանք:

Լուռ ու մունջ, գլուխը կախ, ծանր ու մեծ պայուսակը ծնկներին խփելով, հետևեց ինձ: Հարկավոր էր թույլ չըտալ, որ պոռթկա: Մի որոշ ժամանակ անց ավելի հեշտ կլիներ իր համար խոսել, իսկ ինձ համար՝ լռել:

— Ինչո՞ւ անցած օրը էքսկուրսիայի չէիր գնացել:

Գլուխը ավելի է կախում, առանց այն էլ կարճահասակ է և մի բուռ է դառնում:

— Իսկ երեխաները շատ գոհ էին... Ինչու՞ ես մենակ նստում՝ վերջին նստարանին:

Ծարունակում էր լռել:

Հարցիս պատասխանն իմացա, բայց ոչ այդ օրը և ոչ իրենից: Մի անգամ Միքայելը... խաբարբզիկություն է արել: Եվ դասընկերները միանչև օրս այդ նրան չեն ներում: Հեռու են մնում նրանից:

Մի այլ օր, մի այլ առիթով հարցրի նրան.

— Դու չգիտե՞ս, որ խաբարբզիկությունը լավ բան չի...

Հարցիս պատասխանելու փոխարեն նա ասաց.

— Խաբարբզիկը Լուսինեն ինքն է...

Պարզվում էր, որ Լուսինեն նրանց հարևանն է և լուր է բերել ու տարածել դասարանում, թե Միքայելի հայրը գնացել է տնից: Միքայելը անշուշտ վատ է վարվել, խաբարբզիկությունը վատ բան է: Բայց շատ ավելի վատ բան է ընկերներից մեկնումեկի ընտանեկան անցուդարձերը բերել դպրոց և իրար մեջ խոսելու առարկա դարձնել: Առավել վատ է ընկերոջ երեսովը տալ նրա դժբախտությունը: Առիթը պետք էր գտնել և այս մասին անուղղակիորեն խոսել դասարանում:

### 4. ՆՎԵՐԸ

— Ընկե՛ր Մկրտչյան, դաս կհարցնե՞ք:

— Դա ի՞նչ պատվեր է:

— Շատ եմ խնդրում:

Ջայնում ոչ թե խնդրանք, այլ գրեթե թախանձանք կա:

— Շատ եմ խնդրում:

Պատճառով հետաքրքրվում եմ:

— Մայրիկիս ծննդյան օրն է, այսօր արդեն երկու «հինգ» ստացել եմ, երրորդն էլ եմ ուզում նվեր տանել:

... Բանաստեղծությունների մանօրինակ սյուժեների շատ էի հանդիպել, իսկ կյանքում՝ առաջին անգամն էր: Բանաստեղծությունն ու կյանքը համընկնում էին: Երկուսն էլ մեծագույն ըմբռնողություն են պահանջում:

ՌՈՒԶԱՆ ԱՍԱՏՐՅԱՆ

## Անուշիկը

Երկու երկար
Հյուսքեր ունի
Ու ժապավեն՝
Ծերմակ գույնի:
Գույպաները՝
Մաքուր ու ձիգ,
Աչքերն էլ իսկ
Կապույտ ամպիկ...
Գիրքն հենց էնպես
Նա չի թերթում,
Տուն գա թե չէ,
Դաս է կարդում
Կամ մայրիկին է
Նա օգնում,
Տունն են մաքրում
Ու հարդարում...
Իսկ թե հանկարծ
Ինչ-որ բանի
Ծիշտ անելը
Նա չիմանա,
Չի ամաչի,
Իր մայրիկին
Կհարցնի,
Չիմացածը
Հարցնելը
Ամոթ բան չի:



# Ի՞ՆՉ ԳԻՏԵՍ ՔՈ ՊԱՊԻ ՄԱՍԻՆ

**Լենինգրադյան բլոկադայի մասնակիցներ են եղել Մխիթարի պապն ու պապի եղբայրը: Պապը՝ Մուշեղ Վարդանյանը վերադարձավ, իսկ եղբայրը՝ Վարդանը, զոհվեց 1942 թ. հունվարին:**

**Վարդանից մնացել են մի քանի նամակ և մի լուսանկար՝ զինվորական համազգեստով: Մխիթարը դրանք բերել է դպրոց, և ահա ցուցադրված են փառքի սրահում: Քիչ այն կողմ ամառային զինվորական համազգեստով, պիլոտկան գլխին Կարապետ Նիկողոսյանի լուսանկարն է:**

**— Իմ մեծ հորեղբայրն է,— ասում է Աշոտը,— սա էլ նրա հասունության ատեստատն է: Եղել է ուսման գերազանցիկ, դպրոցն ավարտել է 1941 թվականին: Գերազանց է ծառայել նաև հայրենիքին: Ստացած մեդալները, Գերագույն գլխավոր հրամանատարության շնորհակալագրերը այդ են վկայում:**

**Հանուն հայրենի հողի Կարապետ Նիկողոսյանը զոհվեց Մինսկի համար մղած մարտերում, երբ դեռ չէր լրացել նրա տասնութ տարին:**

**Ահա և այլ նյութեր: Տաղիկենց տան համար սուրբ մասունք են եղել պապի՝ Ալեքսան Համբարձումյանի և նրա տղաների՝ Գեղամի, Արշավիրի, Մելքոնի նկարները, ուղարկած նամակները:**

**Պապը եղել է խիզախ գնդացրորդ: «Կարմիր մարտիկ» թերթի մի խունացած համարում Ալեքսան Համբարձումյանի լուսանկարն է: Նյութը պատմում է, որ խիզախ գնդացրորդը մնալով մեն-մենակ ֆաշիստական վաշտի դիմաց, կարողացել է պահել նրանց առաջխաղացումը, որի համար էլ պարգևատրվել է Կարմիր աստղի շքանշանով:**

**Ապարանի շրջանի Լուսագյուղի դպրոցի փառքի սրահում տեսնելու շատ բան կա:**

**Դպրոցի կարմիր հետախույզները շարունակում են գրի առնել վետերանների հուշերը, նոր նյութեր են հավաքում, օր օրի եղածի վրա նորն ավելացնում:**

ԾԱՎԱՐԾ ԽԱՉԱՏՐՅԱՆ



**Եթե դու չերգեիր,**
**Արշալույսները նման ծիրանի կլինեին**
**Եվ երկնքի ձեղունը՝ նման կապույտ...**
**ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ**

Ավ. Իսահակյանը ծնվել ու մանկությունն անցկացրել է պատմական Շիրակի գավառում, որի ամեն մի անկյունն ուներ հայկական կնիք, հարուստ էր դարերի խորքից եկող բանահյուսությամբ, հարուստ՝ խոսքաշեն շինականների բառ ու բանով, առք ու տաղով:

«Սիրելավույն Շիրակն ինձ համար տիեզերքի կենտրոն է եղել, որովհետև այստեղ է, որ սկսել է բաբախել իմ սիրտը: Այստեղ եմ զգացել աշխարհը: Այս կենտրոնում է սկիզբ առել իմ աշխարհաճանաչումը: Այստեղ եմ լսել ու սովորել մեր հոյակապ մայրենի լեզուն: Այստեղ...

Մեր հովիվների շվին, մեր աշուղների սազը, մեր զուռնան ու փողը լցրել են իմ սիրտը մարդկային նուրբ զգացմունքներով: Վառել են իմ երևակայությունը և թևավորել իմ պատանի հոգին: Այստեղ, այստեղ...»

Բանաստեղծի ծննդյան 100-ամյակի առթիվ Հայաստանի կառավարության որոշմամբ 1975 թ. հոկտեմբերի 29-ին Լենինականի Շահումյան փողոցի 91 տունը վերածվեց հուշատուն-թանգարանի, որտեղ ամփոփվեցին Իսահակյանի կյանքի նշխարները:

Հուշատուն-թանգարանը Իսահակյանի անունը հավերժացնող քաղաքի միակ կառույցը չէ: Լենինականում Իսահակյանի անունով կա դպրոց, փողոց, նրա անունով է կոչվում քաղաքային գրադարանը, մի շարք հուշատախտակներ մատնացույց են անում այն վայրերը, որտեղ սովորել է բանաստեղծը:

Հուշատունը մի հիասքանչ նվեր էր Իսահակյանին իր հայրենակիցներից: Լենինականցիները խորին հոգատարությամբ ու ակնածանքով օգնել են կահավորելու տունը, իրենց համար նվիրական իրերով հարստացրել են հավաքածուները, աշխատել կենդանություն հաղորդել Վարպետի սուրբ օջախին, որպեսզի այն շնչի, խոսի բոլորի հետ և պատմի թե՛ Վարպետի և թե՛ քաղաքի՝ հնամենի Գյումրվա մասին:

Տունը կառուցվել է 1828 թ. և մեզ է հասել գրեթե անփոփոխ: Այստեղ է ապրել Իսահակյանների մեծ գերդաստանը՝ նրա ծնողներն ու հորեղբայրներն իրենց ընտանիքներով: Ալեքսանդրապոլում Ավե-

# ԱՎԵՏԻՔ ԻՍԱՀԱԿՅԱՆԻ ՀՈՒՇԱՏՈՒՆ-ԹԱՆԳԱՐԱՆԸ ԼԵՆԻՆԱԿԱՆՈՒՄ



տիքենց ընտանիքը հայտնի էր որպես «Նիկողայոս աղոնց տուն»: Բանաստեղծի պապը՝ Նիկողայոս Իսահակյանը, գաղթել է պատմական Հայաստանի Բայազետ քաղաքից և հաստատվել Գյումրիում: Նիկողայոս աղան եղել է ուսյալ մարդ:

Ավետիքը ընտանիքում ամենակրտսերն էր, սիրված ու փայփայված բոլորի կողմից: Հայրը Ղազարապատ գյուղում ուներ տուն, նաև ջրաղաց: Ընտանիքը տարվա մեծ մասն անցկացնում էր գյուղում:

7—8 տարեկան Ավետիքին ծնողները տալիս են Ծողո բաջու «ուսումնարանը», որը տեր-թոդիկյան սխոլաստիկ դպրոցի ինքնատիպ մի նմուշ էր, որի նկարագիրը տվել է ինքը՝ Իսահակյանը. «Դասագիրք չունեինք, դասագրքի փոխարեն Ծողո բաջին յուրաքանչյուրիս ձեռքը տվել էր թիակաձև մի-մի փոքրիկ փայտե տախտակ, այդ տախտակները նա ստանում էր հյուսներից՝ իրեն պատվերով շինած: Ծողո բաջին տախտակների վրա փակցրել էր սպիտակ թղթեր, որոնց վրա իր ձեռքով գրել էր հայկական տառերը: Բռնում էինք տախտակի կոթից և կրկնում՝ «Այբ, բեն, գիմ...», ուրիշ ոչ մի բառդություն, ուրիշ ոչ մի միջոց, ուղղակի մեքենայաբար անգիր

էինք անում: Լավ հիշում եմ, որ այդ տախտակներով բակում հող էինք փորում, խաղում, կռվելիս իրար գլխի տալիս և, իհարկե, հաճախ կոտրում: Եվ Շողը բացի, իր հերթին, մեզ ծեծում էր իր ճիպոտով և նոր տախտակի համար փող էր ուզում մեր մայրերից, որոնցից էլ, բնականաբար, ծեծ էինք ուտում՝ տախտակը կոտրած լինելու համար»:

Մի քանի ամիս է մնում փոքրիկ Ավետիքը այդ ուսումնարանում և հեռանում «ոչինչ չսովորած»: Այնուհետև սովորում է Ալեքսանդրապոլի ամենաբարեկարգ «Վիճակային հայոց հոգևոր» դպրոցում, որը, սակայն, ի թիվս մյուս հայկական դպրոցների, փակվում է 1885 թ. ցարական ազգահալած քաղաքականության հետևանքով: Մեկ տարի Ավետիքը սովորում է քաղաքի ռուսական դպրոցում, մինչև 1889 թ. Հառիճի վանքի երկդասյան դըպրոցում, որով և ավարտվում է նրա ուսումնառությունը իր սիրելի Շիրակում:

Մինչև դասերի սկսվելը Ավետիքը ամառները անցկացնում էր գյուղում, հովիվների մոտ: «Երկու տարի ես հովվություն եմ արել բացարձակապես միայն «արվեստի սիրուց»: Մինչև որ քաղաքում դպրոցները կբացվեին և կսկսվեին դասերը: Այն ժամանակ ես դժկամությամբ թողնում էի գյուղն ու հոտը՝ սիրելի ոչխարներս հանձնելով ուրիշին, և գյուղացիացած ու խարկված դեմքով գնում էի քաղաք, բանտարկվում դպրոցի ճնշող պատերի մեջ, ձեռքս առնում ձանձրալի գրքերն ու գերի դառնում վարժապետների խստապահանջ իշխանությանը»:

Իսահակյանն ամբողջ էությամբ կապված էր Շիրակի բնաշխարհի հետ: Թեև իր կյանքի մի փոքր մասն էր նա անցկացրել հայրենի եզերքում, բայց Շիրակի բընությունը, ծերերի հեքիաթներն ու լեգենդները, աշուղների թախծոտ երգերը, գեղջկուհիների սիրազեղուն ջանգյուլումները միշտ բորբոքեցին նրա բանաստեղծական երևակայությունը: Մանկության տարիներին ամբարած հուզական հարստությունը գրողի մշտական ներշնչարանն է դառնում նրա ամբողջ կյանքում:

Ավ. Իսահակյանն իր կյանքի 25 տարին անցկացրեց օտար հորիզոններում, ապրեց աստանդական կյանքով, բայց հոգով ամուր կապված մնաց հայրենի բնաշխարհին, հարազատ ժողովրդին: «Երազում էի միշտ ապրել Շիրակում՝ հորս տանը՝ մորս մոտ, և երգել իմ Շիրակը և նրան իմաստավորող ժողովրդին:

Բայց իմ այդ համեստ երազը չկենսագործվեց. քաղաքական հանգամանքները և հալածանքները ինձ նետեցին հեռուները»:

Հայրենիքից հեռու, օտար ափերում նա միշտ հայրենի եզերքի կարոտն ու վիշտն է պահել իր սրտում, մորմոքել է ու հավերժ վառ պահել կենդանի պատկերները. «Հայաստանը ես միշտ հանապազ կրել եմ իմ հոգում, ուր որ եղել եմ, Հայաստանն տարել եմ ինձ հետ: Նայել եմ Մոնբլանին, բայց տեսել եմ Մասիսը, կանգնել եմ Աթենքի Պարթենոնի առաջ, բայց զգացել եմ Երերույքը և Հռիփսիմեի տաճարը: Լսել եմ Նեապոլի ժողովրդի երգերը, բայց հուզվել եմ մեր ժողովրդի եր-



Լուսանկարները՝
ԳԱԳԻԿ
ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

գով»:
Այսպես է գրել Իսահակյանը, գրեթե նույնն է զգացել և գրել հայ մեծանուն բանաստեղծ Եղ. Չարենցը, որը հանդիպել է օտար ափերում դեգերող բանաստեղծին.

**... Նա երազում էր Արփաչայը**
**Եվ հին Գյումրին իր հեռավոր...**

Օտար ափերից նրա խոսքը միշտ ուղղված է եղել հայրենիքին, ժողովրդին: Նրա իղձն ու ցանկությունը հայրենիք վերադառնալը, ժողովրդի հետ նույնանալն է եղել. «Գամ ծոցդ, հողիդ հետ հող դառնամ, ծառիդ հետ ծառ»:

Եվ եկավ Իսահակյանը, եկավ ու ապրեց իր ժողովրդի նոր կյանքով: Հայաստանն ու հայրենի ժողովուրդը իր բովանդակ սերը, գուրգուրանքը, պատկառանքն ու հպարտությունը խտացրել է մի բառի մեջ՝ Վարպետ: Վարպետ բարձր կոչման հայ ժողովուրդը արժանացնում է նրանց, ովքեր արվեստի կամ գրականության մեջ առավել լիակատարությամբ են արտահայտում ժողովրդի ոգին:

Ու հիմա մտնելով Իսահակյանի հուշատուն-թանգարանը՝ այցելուն խորամուխ է լինում բանաստեղծի խորախորհուրդ կյանքին, կենցաղային մանրամասներից մինչև անցած ստեղծագործական ուղին:

Հուշատուն-թանգարանը միհարկանի կառույց է: Հուշատուն մտնելու համար պետք է անցնել բակով, որտեղ դրված է Իսահակյանի կիսանդրին: Մի քանի աստիճան էլ, և այցելուն կհայտնվի շքամուտքում: Ընդհանուր միջանցքից բացվում են բոլոր սենյակների դռները: Ձախակողմյան դռները տանում են նրա աշխատասենյակը, հյուրասենյակը, ննջարանը՝ սրբություն դարձած առարկաներով, կենցաղային իրերով:

Միջանցքի դիմացի դռները մեզ տանում են մառան, խոհանոց, հացատուն: Այստեղ այցելուն իրեն զգում է ոչ միայն գրողի տանը, այլև ազգագրական ուշագրավ մի թանգարանում, որը ծանոթացնում է 19-րդ դարի երկրորդ կեսի Գյումրվա կենցաղին:

Աջ կողմի սենյակները վերածվել են ցուցասրահի, որտեղ կարելի է ծանոթանալ Վարպետի ստեղծագործության հիմնական փուլերին:

Մտնում են այցելուները, հաղորդվում իսահակյանական աշխարհին՝ իրենց հետ տանելով անջնջելի տպավորություններ:

**ԱՆՈՒՇ ԱՂՈՒՋՈՒՄՅԱՆ**

# ԻՋԵՎԱՆԻ ԳԵՂԱՐՎԵՍՏԻ ԴՊՐՈՑԸ

**Արդեն ութ տարի է, ինչ Իջևանում բացվել է գեղարվեստի դպրոց:**

**Դպրոցի արվեստագետ ուսուցիչների նվիրական աշխատանքի շնորհիվ նրանց սաները իրենց լավագույն ստեղծագործություններով մի քանի անգամ մասնակցել են միջհնջային ու հանրապետական ցուցահանդեսների, արժանացել ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության դիպլոմներին:**

**Ընդամենը մեկ տարի է, ինչ դպրոցում ավանդվում է դեկորատիվ-կիրառական արվեստ: Երեխաները զբաղվում են գործագործությամբ և կարպետագործությամբ:**

**Վերջերս դպրոցի սաները իրենց լավագույն աշխատանքներով մասնակցեցին Կամոյի մանկական գեղարվեստի դպրոցում բացված «Երեխաների միջազգային պաշտպանության տարի» խորագիրը կրող ցուցահանդեսին:**

**Վ. ԲԼԲՈՒԼՅԱՆ**
**ուսուցիչ**





**ԷԴԻԿ ԲԱԼԱՍՅԱՆ, 8-րդ դաս.**
**ՆԱՐԻՆԵ ԲԵԿՆԱԶԱՐՅԱՆ, 2-րդ դաս.**

ՄԱՐԳԱՐԻՏԱ ԴԱԼՄԱՏԻ

# Սիրտը

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ



Եվ այնպես պատահեց, որ մի օր սիրտն ու ստամոքսը վիճեցին:

— Ողորմելի՛, ես եմ քեզ պահում, ես եմ քեզ սնում, եթե քեզ արյուն չմատակարարեմ, դու կորած ես,— ասաց սիրտը:

— Խղճու՛կ,— պատասխանեց ստամոքսը,— ես եմ քեզ սնում, ոչ թե դու ինձ, ես չլինեմ, դու չես բաբախի:

Նրանք պատկանում էին մի ծեր կնոջ, որն ապրում էր մեն-մենակ, քաղաքից դուրս, անտառում գտնվող իր խրճիթում: Կինը մի տանձենի էր տնկել իր խրճիթի առաջ, որը, սակայն, երբեք բերք չէր տալիս: Ծեր կինը ընդամենը մի քուրջ ուներ, որի վրա քնում էր, և կավե ճաքած մի կճուճ, որի մեջ իր աղքատիկ ճաշն էր պատրաստում:

Ծեր կնոջ սննդի պաշարը, որը հավաքել էր մուրալով, սպառվել էր: Մնացել էր մի բուռ ձավար մաշված մի տոպրակի մեջ և ուրիշ ոչինչ:

Ձմեռն եկավ ծանր և խստաշունչ: Նախ սպիտակեցին լեռները, հետո ձյունն իջավ քաղաք, մարմարվեց ծառերի ճյուղերին, սառցակալեցին փողոցներն ու հրապարակները:

Առավոտյան, երբ բնության արքան՝ արևը վառեց իր նարնջագույն ջահը և լուսավորեց աշխարհը, ծեր կինը լուսամուտից դուրս նայեց և, ի՜նչ եք կարծում՝ ի՞նչ տեսավ. տանձենու վրա թառած մի կաքավ:

— Ինչպիսի՜ թագավորական ճաշ,— ուրախացած բացականչեց ծեր կինը: Անմիջապես խնկամանի մեջ խունկ լցրեց, փաթաթվեց իր շալով, գնաց կանգնեց տանձենու տակ և սկսեց խունկ ծխել:

Կաքավը ուզեց թափահարել թևերը, սակայն, խնկի բուրմունքից ուշաթափ, հա-



սած տաճձի ճման ծառից ցած ընկավ։ Ծեր կինը գետնին դրեց խնկամանը, շալը գցեց թռչունի վրա և բռնեց նրան։

— Սիրունի՛կ կաքավիկ, հիմա քեզ կտանեմ խրճիթս և կտապակեմ,— շշնջաց նա։

Բայց ծեր կինը զգալով թռչունի սրտի թպրտոցն իր ափի մեջ, հուզվեց։ Երկա՜ր, երկա՜ր տարիներ նա սեփական սրտի բաբախումից բացի ուրիշի սրտի բաբախում չէր լսել։

Նա դուռը փակեց, թռչնին ազատ արձակեց, կրակ վառեց, կճուճի մեջ ջուր լցրեց և դրեց օջախի վրա։ Իսկ կաքավը քայլում էր խրճիթի մի ծայրից մյուսը և կռթկռթում։ Մի կողմից ծեր կինն էր խոսում, մյուս կողմից կաքավը կռթկռթում։ Այսպիսով, յուրատեսակ մի զրույց սկսվեց նրանց միջև։

— Աչքերս քաղցից մթագնել են, քեզ չեմ տեսնում,— ասում էր ծեր կինն ու զարմանում։— Ստամոքսս կարծես իր սովորական տեղում չլինի, այսօր թվում է ավելի բարձր և խորն է տեղադրված,— շարունակում էր քրթմնջալ ծեր կինը։— Երևի ցրտից է։

Իսկ կաքավը նայում էր ուղիղ նրա աչքերի մեջ և կռթկռթում։

— Ցրտի՛ց է։

Անցավ մի ժամ, ջուրն սկսեց քլթքլթալ։ Ծեր կինը վերցրեց դանակը, սակայն նրա մատները թմրած էին։

— Ի՜նչ ձյուն, ի՜նչ սառնամանիք է,— կրկնում էր ծեր կինը։

— Ի՞նչ ձյուն, ի՜նչ սառնամանիք է,— կռթկռթում էր կաքավը։

Ծեր կինը բացեց մաշված տոպրակը և ջրի մեջ գցեց վերջին բուռ ձավարը։ Ձավարի եփելու ընթացքում կաքավը շարունակում էր կռթկռթալ, իսկ ծեր կինը փայտե գդալով թափով խառնում էր կավե կճուճը, որպեսզի ձավարը չպնդանար։

— Տեսնես քաղաքի իմ ծանոթ տնտեսուհիներից ո՞վ մի հին վանդակ կունենա...

Այդ լսելով սիրտը ցնծաց և ասաց ստամոքսին.

— Հիմա հասկացա՞ր, որ ես էի իրավացի։

Ստամոքսը լուռ մնաց...

Հունարենից թարգմ.
**ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԸ**

# Մանկության օրեր...

ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## «Ձիստիմ-բլիստիմ»

Գաղթականների մեր ճամբարը հետըզհետե դատարկվում էր: Այդտեղ հանգրվանածները սկսեցին տեղավորվել Թիֆլիսում, տուն ու տեղ դնել, գործ սկսել, կամ մեկնում էին այլ քաղաքներ: Մենք էլ հրաժեշտ տվինք մեր հյուրընկալ, թեկուզ շատ անհարմար օթևանին, երբ մեծ քույրըս՝ Արաքսին ամուսնացավ: Մեր փեսա սղերդցի Ասատուրը, որ կոշկակար էր, քաղաքում մի աղքատիկ բնակարան վարձեց, և բոլորս փոխադրվեցինք այդտեղ:

Ասատուրը հորեղբորս որդու՝ Տրդատի հետ Գոլովինսկայա (այժմ՝ Ռուսթավելի) փողոցի սկզբին, Մելիք-Ղազարովի տան դիմացի շենքի առաջին հարկում մի խանութ վարձեցին, այդտեղ կազմակերպեցին կոշիկի համակողմանի խնամքի, այսօրվա լեզվով ասած՝ ատելիե: Հայելազարդ երկու պատերի տակ նստած երեքական կոշիկ սրբողները, այդ թվում եղբայրս՝ Արծրունը, ես և մեր ընկեր Հովհաննես Սոլախյանը, որ նույնպես վանեցի էր ու որբ, սպասարկում էինք մեր դիմաց՝ աթոռներին նստած «մուշտարիներին»:

«Ձի՞ստիմ-բլի՞ստիմ»,— բացականչում էինք ու եռանդով պտտեցնում խոզանակները: Երբ ավարտում էինք մաքրելը, մահուդով փայլեցնում, ձեռքներս խփում էինք տախտակին՝ ազդարարելով վերջը: Ես ամենափոքրահասակն էի: Երբ հաճախորդը սապոգավոր էր, ձեռքերս չէին հասնում մինչև վեր, ստիպված էի մաքրել կիսականգնած, առաջացնելով ծիծաղ:

Կարծես ամեն ինչ լավ էր, գոհ էինք օրվա տուն բերած մեր վաստակից: Սակայն երկար չտևեց մեր գոհունակությունը:

Մի օր ատելիե մտավ մենշևիկյան մի սպա, կովկասյան գեղեցիկ չուխան ու փափկաճիտ կոշիկը հագին, ատրճանակը կապած: Ամբարտավան մի հայացք նետեց փեսայիս ու պատվանդանին դրեց իր ոտքերը: Փեսաս գործի անցավ և երբ ա-

վարտելու վրա էր, սպան ոտքը շրջեց ու զննեց, նկատեց կրնկի վրա չներկված մի փոքրիկ տեղ և գոռաց փեսայիս վրա.

— Տո հայվա՛ն, աչքերդ որտե՞ղ են:

— Ինչու՞ եք զայրանում, պարո՛ն, չեմ նկատել, իսկույն կներկեմ,— նրա կոպտությանը հանգիստ պատասխանեց Ասատուրը:

— Կեղտոտնե՛ր, եկել լցվել եք քաղաք, մի կարգին գործ էլ չեք կարողանում անել:

Փեսաս կարմրատակեց, ոտքի ելավ ու շնդալից մի ապտակ հասցրեց սպային: Սա կատաղած՝ ատրճանակը հանեց պատյանից, բայց փեսաս խոզանակով հարվածեց նրա ձեռքին և ատրճանակը զնգալով ընկավ հատակին: Առաջացավ իրարանցում: Մարդկանցով լցվեց ատելիեն, ոմանք վազեցին միլիցիայի հետևից: Սպան իշխանի տիտղոս ուներ: Հաջողվեց հետևի դռնից փախցնել Ասատուրին: Էդ գնալն էր, որ նա գնաց: Տեղեկանալով, որ իր հարազատները գաղթի ճանապարհներով Եգիպտոս են հասել, նրանց ետևից մեկնելու պատրաստություն տեսավ:

— Ապա մեր ճարը ի՞նչ պիտի լինի, ես իմ որբերին մենակ ինչպե՞ս պահեմ, — աղերսագին հարցնում էր մայրս,— ո՞ւր ես տանում, մեզանից հեռացնում աղջկանըս, թոռանս:

— Էստեղ ապրելու տեղ չի, մայրի՛կ, մի՛ նեղանա, կերթամ, գործի տեր կդառնամ, էնտեղից ձեզ կօգնեմ:

Ու մեկնեց, թողնելով մեզ անտեր-անտիրական...

## Հասկահավաք

Ծուլավերի դաշտերում սկսվել էր հունձը: Մեր հարևաններից մի քանիսը՝ բոլորը գաղթականներ, պատրաստվում էին մեկնել հասկահավաքի: Մայրս և եղբայրս էլ որոշեցին նրանց միանալ, ինձ էլ թողին տանը միայնակ:

Քաղաքի մի ծայրից ոտքով կտրում էի 5—6 կիլոմետր ճանապարհ, որպեսզի հասնեմ «Սերեբրեննիյ ռյադ»-ում գտնվող Թամամշովի քարավանատունը: Այստեղ կազմակերպված էր ճաշարան ու օրը մեկ անգամ կերակուր էին բաժանում որբ երեխաներին: Կերակուր ասածը ջրիկ ապուր էր: Ուտելուց հետո, մինչև նույն երկար ճանապարհը կտրելով տուն էի հասնում, նորից... ուտել էի ուզում: Այդպես օրեր անցկացրի, մինչև մերոնք վերադարձան, տանջված ու հոգնած տուն մտան՝ եղբորս շալակին ցորենի կիսատ մի պարկ:

Պատմեցին, թե ինչ գնով են այն ձեռք բերել: Տապ արևի տակ, քրտնաթոր, սոված ու ծարավ, օրերով շրջել են հնձած արտերում, մեկիկ-մեկիկ հավաքել հասկեր, որպեսզի դրանք պտղտեն և բուռ առ բուռ պարկը լցնեն: Քնել են բաց երկնքի տակ, օրեր շարունակ կրկնելով այդ տանջալից աշխատանքը:

— Արյուն-քրտինքով ձեռք բերինք,— ասաց մայրս:— Այդ խոսքերը մեխվել են հիշողությանս մեջ: Մեր օրերում, ամեն անգամ, երբ տեսնում եմ լիության մեջ ապրող մարդկանց անհարգալից վերաբերմունքը հացի նկատմամբ, մտորում եմ. մի՞թե մարդիկ մոռացել են, թե մեր ծնողները ինչ գնով էին հաց ձեռք բերում:

## Արշակ աղան ու իր կովերը

Միխայլովսկայա փողոցում գտնվող կրկեսից ոչ հեռու իր սեփական տանը ապրում էր Արշակ անունով մեծահարուստ մի հայ: Բակի մի ծայրում գոմ ուներ, մեջը՝ երկու կով, ըստ երևույթին սիրում էր սեփական թարմ կաթնամթերք վայելել: Ասին, որ հոտաղի կարիք ունի ու մի հանձնարարականով մոտն ուղարկեցին ինձ: Արշակ աղան ակնոցը դրեց քթին, կարդաց ու խեթ-խեթ ինձ նայեց:

— Ա՛յ տղա, —ասաց,— շատ ես պստիկ, գլխիդ չտան ու կովերս քշեն տանեն:

— Չե՛ն քշի, աղա՛ ջան, չե՛մ թողնի,— թախանձագին խնդրեցի, վախենալով, որ մերժում կստանամ: Նա մի քիչ մտածեց ու... համաձայնեց: Հաջորդ օրվանից դարձա Արշակ աղայի հոտաղը: Ամեն օր կովերը քշում էի Քռի ափը՝ արածեցնելու և երեկոյան կողմը տուն վերադարձնում: Աղախինը, որ մի բարի կին էր ու այդ կովերի կթվորուհին, գոմում ինձ կերակրում էր մեծահարուստի սեղանի մնացորդներով: Դա էլ իմ միակ վարձատրությունն էր:

Մի օր, երբ կովերը տուն էի բերել, Արշակ աղի տանը եռուզեռ նկատեցի: Բակից, հյուրասենյակի բաց դռնով տեսա անուշաբույր ուտելիքներով ծանրաբեռն-

ված սեղանը ու թուղս կով տվի: Այդպիսի սեղան կյանքումս առաջին անգամ էի տեսնում:

Տուն եկող հյուրերը թոթվում էին Արշակ աղայի ձեռքերը՝ բացականչելով.

— Քրիստոս հարյա՛վ ի մեռելոց:

— Օրհնյա՜լ է հարությունը Քրիստոսի, — պատասխանում էր աղան ու ներս հրավիրում հյուրերին: Տեսնելով ինձ, կարծես մի բան հիշեց ու կարգադրեց տանտիկնոջը.

— Սոնա՛, զատիկ օր է, էն պլրից մի տոպրակ տուր էս տղին, թող տուն տանի, ցորենի հացի համը մոռացած կլինեն:

Իսկապես որ մոռացել էինք: Մայրս ամեն կիրակի օր գնում էր «Սաղդատսկի բազարը»՝ Թիֆլիսի շուկաներից մեկը, որն ամենամոտն էր, ու իր խղճուկ, սրանրա տանը լվացք անելով ձեռք բերած վաստակով 10—15 գրվանքա եգիպտացորենի ալյուր առնում: Դրանով էլ պատրաստում էինք բլիթները ու թխում թիթեղի վառարանի վրա կամ թավայի մեջ:

Ուրախ տուն հասա, սեփական վաստակով ոգևորված ու հպարտ-հպարտ տոպրակը հանձնեցի մորս: Իմանալով պարունակությունը, մայրս հուզված բացականչեց.— Զորությունդ մե՜ծ, աստվա՜ծ, էս սուրբ զատկի օրը մեզ էլ արժանի դարձրիր ցորենի հացի:

Մայրս թևերը աշխույժ վեր քշտեց և գործի անցավ: Իսկույն խմոր շաղախեց, հունցեց ու մի շորով ծածկեց, որ «եկի» գա: Ես ու Արծրունը անհամբերությամբ սպասում էինք: Վերջապես բոցկլտաց կըրակը: Ապա և սենյակը լցվեց թարմ հացի ախորժալի բուրմունքով: Էլ չսպասեցինք, որ բլիթները լավ եփեն, մի քիչ սառեն, մի-մի հատ վերցրինք ու բերաններս վառելով սկսեցինք ուտել:

— Տառն ի, զեհիր, ուտելու պան չի,— ասաց Արծրունը ու բլիթը վայր դրեց: Սաստիկ վշտացած, ես հետևեցի նրա օրինակին: Արշակ աղայի հին ալյուրից պատրաստած հացի դառնությունը կարծես մի անգամ ևս հիշեցրեց մեր իսկ կյանքի դառնությունը:

Մանուկ հոգիս խռովվեց և սկսեցի արտասվել...

— Մի՛ լա, բալա՛մ, մի՛ լա,— մխիթարում էր մայրս,— թաղեմ քյո Արշակ աղի կլյոխ, խեր չտիսնա,— անիծեց նա՝ մեզ հետ միասին վրդովված ու պատվիրեց, որ մյուս օրվանից այլևս Արշակ աղայի կովերը չտանեմ արածեցնելու:

# Մասնագիտական կողմնորոշման համար

Մեր դարը համարվում է տիեզերական թռիչքների ու ատոմային էներգիայի դար, մտածող մեքենաների ու գենետիկայի դար: Անվանումների այս շարքը կարելի է շարունակել բավականին երկար: Բայց թերևս առավել իրավացի կլինենք, եթե մեր հարյուրամյակն անվանենք բազմաթիվ նոր մասնագիտությունների առաջացման ու դրանց ծայրահեղ նեղացման դար:

Ահա մեր դարին հատուկ այս վիճակն էլ չափազանց մեծ դժվարություններ է առաջացրել մասնագիտական կողմնորոշման համար: Յուրաքանչյուր մարդ ապրում է ոչ միայն ինքն իր, այլև կյանքն իրենով հարստացնելու, հաջորդ սերունդներին ինչ-որ բան փոխանցելու համար, ուստի հասկանալի է, որ մասնագիտության ճիշտ ընտրությունը ժամանակի հետ դառնում է էլ ավելի պատասխանատու և կարևոր:

Վաղուց արդեն կասկած չի հարուցում այն պնդումը, որ մարդը որպես անհատ ձևավորվում է մանկության տարիներին: Այդ տարիներին է նա կուտակում իր ունեցած ինֆորմացիայի զգալի մասը:

Ուսուցման պրոցեսը կազմակերպված ձևով սկսվում է դպրոցում, որտեղ դասավանդվում են բազմաթիվ հանրակրթական առարկաներ: Դպրոցում արդեն բավականին նկատելի են դառնում աշակերտների հակումները այս կամ այն առարկայի նկատմամբ: Մեկը գրականություն է սիրում, մյուսը՝ մետաղամշակում, երրորդը՝ ֆիզիկա ու մաթեմատիկա, ըստ որում չափազանց դժվար է բացատրել այդ հակման պատճառները, դրա կենսաբանական ու սոցիալական հիմքը: Ժամանակակից գիտությունը դեռևս ի վիճակի չէ սկզբից ևեթ, ասենք, երեխայի ուղեղի կառուցվածքն ուսումնասիրելով, ասել, թե տվյալ անհատը հատկապես որ բնագավառում կարող է առավել արդյունավետ դրսևորել իր ներքին կարողությունները: Նման ուսումնասիրությունները առայժմ մնում են ֆանտաստիկ գրականության

մենաշնորհը:

Ամերիկյան հայտնի ֆանտաստ գրող և գիտնական Այզեկ Ազիմովի պատմվածքներից մեկում, որը նվիրված է մեր մոլորակի հեռավոր ապագային, հեղինակը ընթերցողի ուշադրությանն է ներկայացնում ուսուցման պրոցեսի կազմակերպման իր մեկնակերպը: Այստեղ բոլոր մարդիկ վաղ մանկությունից անընդհատ գտնվում են մասնագետների հսկողության տակ, որոնք հետևում են նրանց ուղեղում տեղի ունեցող փոփոխություններին և դրանց հիման վրա որոշում, թե ով որ բնագավառում ամենից լավ կարող է աշխատել: Իսկ հետագայում այդ կանխագուշակումների հիման վրա որոշակի տարիքից սկսվում է այս կամ այն մասնագիտության արագացված ուսուցումը: Այդ պատմվածքում հեղինակային ամենախորշոր հայտնագործությունը, դժվար է ասել՝ անսպասելի՞, թե՞ օրինաչափ հետևյալ մտահղացումն է. որոշ երեխաների, որոնց թիվը մյուսների համեմատությամբ շատ փոքր է, սկսում են ուսուցանել առանձին խմբերով: Ուսուցումը կատարվում է ոչ թե ինֆորմացիա ներարկող մեքենաների, այլ սովորական գրքերի օգնությամբ, ճիշտ այնպես, ինչպես մեր օրերում կամ մեզանից դեռ շատ առաջ: Պարզապես այդ երեխաներն անընկալունակ են մեքենայական ուսուցման համար, նրանք չեն կարող հենց այնպես յուրացնել պատրաստի ինֆորմացիան: Գիտելիքների կուտակման պրոցեսում նրանք պարտադիր կերպով պետք է զգան, թե ինչպես, ինչ ճանապարհով են առաջացել դրանք: Սկզբում նման երեխաները կարծում են (և նրանց հետ միասին նաև ընթերցողները), որ իրենք ամենաանընդունակներն են, անպետք են բոլոր աշխատանքների համար: Իսկ վերջում հեղինակն ընթերցողին ծանոթացնում է իր իսկական հայտնագործության հետ: Բանից պարզվում է, որ մեքենայական, մեխանիկական ուսուցման համար անընկալունակ են այն երեխաները, որոնք պոտենցիալ ստեղծագործողներ են, որոնք ընդունակ են նոր բան ստեղծելու: Նշանակում է, ինչ-որ բան ստեղծելու համար միայն ինֆորմացիայի ու հմտությունների պատվաստումը բավական չէ: Դրանց առկայությունը բավարարում է միայն տվյալ որոշակի մակարդակի վրա մնալու, դրանից ցած չընահելու համար: Իսկ նորն ստեղծելու համար անհրաժեշտ է մի այլ բան ևս,



Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

որը ձեռք է բերվում գրքերի հետ կենդանի շփմամբ:

Արդյոք պե՞տք է կրկնել, որ յուրաքանչյուր նոր գրքի ընթերցանությունը մարդուն թույլ է տալիս ապրել ևս մի նոր կյանքով, այդ երկի հերոսների կյանքով, ծանոթանում ես նրանց մտածելակերպին, աշխարհայացքին, հուզող հարցերին: Եվ ջանում ես նրանց հետ, նրանց կողքին ապրելով լուծել նրանց կյանքի խնդիրները, այնպես ինչպես քո կյանքի հարցերը կլուծեիր: Այդպես գրքերը ը թույլ են տալիս մտովի գիտափորձ կատարել, այս կամ այն հերոսի հետ երևակայության աշխարհում զգալ նրա մասնագիտությամբ զբաղվելու հաճույքը, դըժվարությունները: Մարդ մինչև սեփական մասնագիտություն ընտրելը այդպես կարողանում է իր ներքին կարողությունները փորձարկել մի քանի, նույնիսկ շատ մասնագիտությունների ասպարեզում:

Իսկապես, մասնագիտություն ընտրելը հեշտ բան չէ, և այս մտորումները նպատակ չունեին ո՛չ դժվարությունները թաքցնելու և ո՛չ էլ այդ դժվարությունները հաղթահարող պատրաստի դեղատոմս առաջարկելու, մի բան, որ եթե հնարավոր լիներ, վաղուց արդեն արված ու պարտադիր ուսուցման ծրագրի մեջ մտած կլիներ: Իսկ իրականությունն այն է, որ մեր կյանքի հիմնական զբաղմունքին, մեր մասնագիտությանը մենք նախապատրաստվում ենք ամենավաղ տարիքից: Եվ այդ նախապատրաստության ընթացքում որքան ավելի շատ ենք կարդում, որքան ավելի շատ բան ենք սովորում, որքան ավելի շատ մարդկանց հետ ենք շփվում, այնքան ամրանում ու բյուրեղանում է մեր սեփական մտածելակերպը, այն, ինչ մեր անհատականությունն է կազմում, ինչ հարազատ է մեզ ու կաթիլ առ կաթիլ հավաքվել է տարիների ընթացքում: Եվ ահա, այդ ամենի հիման վրա գոյացած մտածելակերպն ու աշխարհայացքն է միայն, որ կարող են հուշել, թե որ բնագավառում կարող ենք աշխատել, որպեսզի հետո, սեփական ներքնաշխարհի և ընտրած մասնագիտության ներդաշնակությունն իսկական երջանկություն պարգևի մեզ, զգանք, որ առանց այդ աշխատանքի կապրեինք կիսատ կյանքով, մի շատ էական բանի պակաս կունենայինք:

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Ֆիզիկամաթեմատիկական գիտությունների թեկնածու

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Դժվար է ասել, հավերն օժտվա՞ծ են երաժշտական լսողությամբ: Հավանաբար՝ ոչ, բայց փաստը մնում է փաստ, որ որոշակի երաժշտությունը բարենպաստ ազդեցություն է գործում հավերի առողջության վրա:

Այս եզրակացությանն են հանգել Կ. Ի. Սկրյաբինի անվան Համամիութենական անասնաբուժական ակադեմիայի մասնագետները, ուսումնասիրելով աղմուկի ազդեցությունը հավերի վարքագծի վրա:

Պարզվել է, որ հավերը վատ են տանում բացարձակ լռությունը, նախընտրում են ձայնային այնպիսի ֆոն, որպիսին մենք զգում ենք շարժվող էլեկտրագնացքի վագոնի մեջ: Նրանց շատ անհանգստացնում է ուժեղ ճիչաղմուկը:

Իսկ ժամանակակից թռչնաբուծարաններում, որտեղ բարձր մակարդակի վրա են գտնվում մեքենայացման և ավտոմատացման պրոցեսները, իսկապես, աղմուկը շատ է: Ահա թե ինչու մասնագետներն առաջարկում են հավերին աղմուկից շեղել հատուկ ընտրված երաժշտության միջոցով:

## ԺՊԻՏՆԵՐ

ԿԱՄՔԻ ՈՒԺ: Ես որոշեցի կոփել կամքս: Զբաղվում էի մարմնամարզությամբ և սառը ջրով շփումներ անում: Երեք օր ամեն ինչ նորմալ էր ընթանում, իսկ հետո Պետյան ինձ մի գիրք տվեց լրտեսների մասին: Կարդում էի մինչև ուշ գիշեր: Էլ ի՞նչ մարմնամարզություն: Նույնիսկ դասերս չէի հասցնում սովորել, քնով էի անցնում և դպրոցից ուշանում: Պետյան խանգարեց կամքս կոփել:

ՀՌՉԱԿԱՎՈՐ: Ինքս ինձ սկսեցի տեխնիկապես զարգացնել, որպեսզի հետո իմ մասին գիրք գրեն «Նշանավոր մարդկանց կյանքը» շարքի համար: Գրվեցի միանգամից չորս խմբակում, հազիվ էի երկու անգամ հաճախել,




Թռչուններին դա դուր եկավ: Հավերը, ընտելանալով երաժշտությանը, ավելի շատ են ածում, նրանց մարմնի ջերմությունը չի բարձրանում և ամենից քիչ նրանք գանգատվում են ախորժակի բացակայությունից:

● Մի երիտասարդ մի անգամ ամերիկացի նշանավոր գյուտարար Էդիսոնին առաջարկեց ստեղծել ունիվերսալ հեղուկ, որի մեջ ամեն ինչ լուծվեր:

— Ասացե՛ք, խնդրեմ, իսկ ինչպիսի՞ անոթում կպահեք այդ լուծույթը,— հարցրեց Էդիսոնը:

Երիտասարդը ստիպված եղավ տեղնուտեղը հրաժարվել իր գայթակղիչ մտքից:

Այս դեպքը կատարվել է շատ տարիներ առաջ, 20-րդ դարի սկզբին: Եվ ահա մեր օրերում «Պիոներսկայա պրավդա» թերթը 5—6-րդ դասարանցիներին առաջարկեց այդ նույն խնդիրը լուծել՝ գտնել ունիվերսալ հեղուկի պահպանման ձևը:

Մրցույթին մասնակցած երեք հազար պիոներական ջոկատներից 2500-ը գտան խնդրի լուծումը, որը ժամանակին անլուծելի էր համարել նույնիսկ Էդիսոնը:

Ահա մի քանի ընդունելի լուծումներ:

— Լուծիչը պահել ցածր ջերմաստիճանում, սառեցրած վիճակում.

— Լուծիչը պահել պինդ վիճակում.

— Լուծիչը դարձնել էլեկտրական հոսանքի հաղորդիչ, որի դեպքում այն կպահվի էլեկտըրամագնիսական դաշտում, ինչպես պլազման:

Գյուտարարական մտքի մակարդակը, ըսկըսած Էդիսոնի ժամանակներից, շատ է բարձրացել:

---

երբ զանգահարեց Կիմը, ասաց, որ բացատում ձյունը հալվել է, և առաջարկեց ֆուտբոլ խաղալ: Դասերից հետո օրերով խաղում էինք:

Կիմի պատճառով հռչակավոր չդարձա:



ՀԱՎԱՔՈՐԴ: Մեր դասարանում ամեն մեկը մի բանի հավաքածու ունի: Ես էլ սկսեցի բացիկներ հավաքել: Իսկ երբ տեսա Դիմկայի դրոշմանիշերի ալբոմը, միտքս փոխեցի, սկսեցի դրոշմանիշ հավաքել: Հետո տեսա Սաշկայի նշանների հավաքածուն, և այդ ինձ ավելի դուր եկավ: Սկսեցի նշաններ հավաքել:

Հետո ես խճճվեցի իմ հավաքածուների մեջ: Պակասը լրացրեց Դիմկան, սկսեց հարցուփորձ անել, թե ինչ գիտեմ դրոշմանիշերի մասին՝ որտե՞ղ, ե՞րբ, ինչի՞ առթիվ են թողարկվել... Մի խոսքով, ինձանից հավաքորդ էլ դուրս չեկավ:

ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ: Ես ընկերացա Վովկայի հետ: Մայրիկիս նա շատ դուր եկավ:

— Ոչինչ,— ասաց,— հանգիստ, լավ տղա է:

Բայց մեր ընկերությունը կարճ տևեց: Վովկան ասաց.

— Դու անհավասարակշռվածի մեկն ես, մի գործից մյուսին ես թռչում և ոչ մի բանի չես հասնում:

Ես ի՞նչ մեղավոր եմ, որ այդպես է լինում:

Պ. ՄՈԶԱԼՈՎ

## ԺԱՄԱՆՑ

- Թռչունների երամին է հանդիպում մի ուրիշ թռչուն և ասում.

— Ողջու՜յն, հարյու՛ր թռչուններ:

— Հարյուր չկանք,— պատասխանում են երամից,— մեկ մեր չափ, մեկ մեր կեսի չափ, մեկ մեր կեսի կեսի չափ և դու էլ հետներս, նոր կդառնանք հարյուր:

Երամում քանի՞ թռչուն կար:

- Մի հովիվ մյուսին ասում է.

— Տուր քո հոտից ինձ 100 ոչխար և մեր ոչխարները կհավասարվեն:

— Ոչ,— պատասխանում է մյուսը:— Ավելի լավ է դու քո ունեցածից տաս ինձ 100 ոչխար, այն ժամանակ իմը քոնից երեք անգամ ավելի կլինի:

Քանի՞ ոչխար ուներ նրանցից յուրաքանչյուրը:

- Ի՞նչ նշան պետք է դնել իրար կողքի գրված երկու և երեք թվանշանների միջև, որ ստացվի երկուսից մեծ, երեքից փոքր:

- Ունենք 3 տարաներ՝ 8 լիտրանոց, 3 լիտրանոց և 5 լիտրանոց: 8 լիտրանոցը լիքն է կաթով, իսկ 3 և 5 լիտրանոցները դատարկ են: Այդ դատարկ տարաների միջոցով հարկավոր է 8 լիտրից 4 լիտր լցնել 5 լիտրանոցի մեջ:






ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց, № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



ՊԵՏՐՈՍ ԿՈՆՏՈՒՐԱՋՅԱՆ (1905—1956) «ՔԱՂԱՔԱՅԻՆ ՏԵՍԱՐԱՆ»

Հանձնված է տպագրության 18.12.1984 թ.։ Ստորագրված է տպագրության 10.03.1985 թ.։ ՎՖ 05157։ Թուղթ օֆսեթ, 70×100¹/₁₆։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. Խամ., 3,9 հրատ, մամ.։ Տպաքանակ՝ 68552։ Պատ. 2491։ Գինը՝ 15 կ.։

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 18.12.84 г. Подписано к печати 10.3.85 г. Формат 70×100¹/₁₆. ВФ 05157. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 68552. Заказ 2491. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.




Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ.:

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806